# Մայիս

ԱՐՏԱՇԵՍ ՊՈՂՈՍՅԱՆ

Նկ. Բ. ՄԱՋՄԱՆՅԱՆԻ

Վառ արևն ասաց
Ուրախ, բերկրալից.
— Ամպե՛ր, հեռացեք,
Մայիս է նորից.
Թող առատ-առատ
Լույս տամ մայիսին...

Իսկ արագահոս
Ջրերն ասացին.
— Թռչկոտենք ազատ,
Ուրախ կարկաչենք,
Եվ մայիսը մեր
Նոր այգին կանչենք...

Նոր շենքը պարզեց
Ալ դրոշը վեր.
— Մայիսն, ընկերնե՛ր,
Չեմ տեսել ես դեռ.

Շուտով շարքերը
Կանցնեն միասին.
Թո՛ղ իմ հասակն էլ
Ցույց տամ մայիսին:

Մարդիկ տներից
Դուրս եկան արագ,
Թնդաց և փողոց,
Եվ հրապարակ:

Ելած հանդեսի՝
Շարքերով հպարտ
Անցան մանուկներն
Առույգ ու զվարթ,

Փռվեց մայիսյան
Արևը պայծառ,
Ու կարկաչեցին
Ջրերը կայտառ:

Ու ջինջ աչքերում
Ամեն մի մանկան
Ժպտաց աշխարհի
Մայիսն ապագա:






*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 5

ՄԱՅԻՍ

1952 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 24-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆ ՀԱՐԱԶԱՏ ՍՏԱԼԻՆԻՆ ԵՐՋԱՆԻԿ ՄԱՆԿՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ։

# ՊԱՐՏԱՆՔԸ

Ս. ԽԱՆԶԱԴՅԱՆ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Նա փոքրիկ էր, ընդամենը տասներկու տարեկան. բայց արդեն զինվոր էր: Այն էլ ինչպիսի՜ զինվոր:

— Սաշա՛, վազիր կտրված հեռախոսաթելը կապիր,— հրամայում էր նրան սերժանտը: Եվ փոքրիկ Սաշան գնդակի պես թռչում էր արկերի պայթյուններից առաջացած հողափնջերի միջով ու կտրված կապը վերականգնում:

— Սաշա՛, բարձրացիր ծառն ու իմացիր, թե ի՞նչ է կատարվում հակառակորդի դիրքերում,— կարգադրում էր դասակի հրամանատարը:

Եվ Սաշան սկյուռի պես մագլցում էր ծառը, փոքրիկ մարմինը թաքցնում կանաչ ճյուղերի մեջ ու կատարում խնդիրը:

Կապի դասակի զինվորները չեն հիշում գնդի հրամանատարը: Այդ բանը խիստ զարմացնում էր զինվորներին:

— Տարօրինակ տղա է Սաշան, նրա տարիքում այսպիսի հերոսական կյանք ունեցող շատ տղաներ անպայման կպարծենային, կգոռոզանային, իսկ սրա համար կարծես պարծանք ասած բանը գոյություն չունի,—ասում էին զինվորները:

* * *

Մի օր կապի դասակը տաք կռվի բռնվեց հիտլերականների հետ: Ճանապարհների խաչմերուկումն էր, մի բլրի տակ: Ֆաշիստները ուզում էին գրավել խաչմերուկը, բայց դասակը համառ դիմադրում էր: Դիմադրում էր նաև Սաշան: Մի փոսի մեջ շոքած նա կրակում էր իր ավտոմատից: Կրակում էր կենտրոնացած, նպատակային: Իսկ երբ ֆաշիստների մի ամբողջ վաշտ գրոհեց կապի դասակի վրա, բոլորը բարձրացան պատաս-



մի դեպք, որ Սաշան ճիշտ չկատարեր հրամանը: Նրանք միշտ ասում էին:

— Է՛խ, Սաշա՛, հերոս ես դու, իսկական հերոս, լավ սպա կդառնաս:

Բայց Սաշան ոչ մի անգամ չէր պարծենում իր հասցեին գովեստներ լսելուց: Չէր պարծենում ոչ «Արիության համար» իր կլորիկ, սիրուն մեդալով, ոչ էլ կրտսեր սերժանտի իր կոչումով, որը նրան շնորհել էր խան գրոհի: Զինվորները տեսան, թե ինչպես Սաշան չոր խոտերի միջով, գրեթե գետնին հավասարված, սողաց, անցավ հիտլերականների թիկունքն ու սկսեց կրակել թշնամու զինվորների վրա:

Իրենց թիկունքից ուժեղ հարված ստանալով ֆաշիստները փախան, խաչմերուկի մոտ մի քանի դիակ թողնելով:

Փառավոր հաղթանակ էր:

Կապի զինվորները ցնծության մեջ էին. բայց այդ ցնծությունն իսկույն հանգավ, երբ նրանք տեսան Սաշային: Սաշան գլխից վիրավոր էր: Արյունը առատ հոսում էր տղայի կարճ խուզած մազերի տակից ու ողողում նրա մանկական դեմքը, կուրծքը: Բայց տղայի աչքերը վառվում էին հպարտության կրակներից. նա ժպտում էր:

— Սաշա՛, այդ ի՞նչ է պատահել, վիրավո՞ր ես,— վախեցած հարցրին զինվորները:

— Այո, վիրավոր եմ, գլխից,— հպարտ պատասխանեց տղան, նստելով զինվորների մոտ: Նրա դեմքից չէր հեռանում գոհունակության հազիվ նկատելի ժպիտը:

Վերքը թեթև էր: Երբ տղերքը փաթաթում էին այն, Սաշան հանդարտ պատմում էր, թե ինչպես ինքը տապալեց երկու ֆաշիստի, թե ինչպես մյուսները փախան, և թե ինչպես վիրավորվեց:

— Պարծենո՞ւմ ես,— հարցրեց դասակի հրամանատարը:

Սաշան մի պահ չպատասխանեց, ապա ուղիղ նայելով հրամանատարին, ասաց.

— Ինչ՛, ընկեր լեյտենանտ, ի՞նչ պարծենամ. ուրախ եմ, որ ես էլ հիմա իսկական զինվոր եմ, վերք ունեմ, իմ արյունն եմ տվել հայրենիքի համար:

Սաշան չգնաց սանգումարտակ: Նա մնաց իր դասակում: Մասնակցեց շատ մարտերի:

Թեև նրա վերքը վաղուց լավացել էր, բայց նա դեռ կրում էր գլխի ճերմակ վիրակապը: Պարծենում էր այդ վիրակապով:

---

# Խաղաղության ՄԱՅԻՍ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Ի՜նչ պայծառ է այս առավոտ,
Վառ արևն է դուրս եկել,
Ծառ ու ծաղկունք ցողոտ, շաղոտ,
Զարդարվել են ու զուգվել:

Ողջո՜ւյն, ողջո՜ւյն
Գարնան ամիս,
Խաղաղության
Պայծառ մայիս:

Ջառ հավքերն են թռչում, կանչում՝
Գարնան շնչով հիացած,
Առվակներն են զիլ կարկաչում
Ու սարերից իջնում ցած:

Ողջո՜ւյն, ողջո՜ւյն
Գարնան ամիս,
Խաղաղության
Ջինջ մայիս:

Մեծերի հետ մենք էլ սիրով
Դուրս ենք եկել հանդեսի,
Ու կանչում ենք բարձր ձայնով՝
— Կեցցե՜ մեկը մայիսի:

Ողջո՜ւյն, ողջո՜ւյն
Գարնան ամիս,
Խաղաղության
Կարմիր մայիս:

# ՊԻՈՆԵՐ ՀՐԱՉԻԿՆ ՈՒ ԻՐ ԸՆԿԵՐՆԵՐԸ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. ԱՐ. ԶԱՔԱՐՅԱՆԻ

Իզուր չէ, որ ընկերները Հրաչիկին մաթեմատիկոս են անվանում։

Մի բան ընկնի ձեռքը թե չէ, անմիջապես պետք է իմանա ինչքան է երկարությունը, քաշը, ծավալը։ Մեկ էլ տեսար՝ նա սկսեց մի այնպիսի բան չափել, այնպիսի հաշիվներ անել, որ ոչ ոքի մտքով չի անցնի։

Հենց վերջերս նա բարդի ծառի մոտ կանգնած չարչարվում էր, ինչ-որ չափումներ կատարում։ Փայտից եռանկյունի էր պատրաստել, որի սուր ծայրը մոտեցնելով աչքին, նայում էր լուսնին այնպես, կարծես նշան էր բռնում։

Տղաները հետաքրքրվեցին ընկերոջ աշխատանքով։

— Ի՞նչ է, չլինի՞ ուզում ես լուսնի վրա կրակել,— կատակով հարցրեց Բագրատը։

Հրաչիկը միանգամայն լուրջ պատասխանեց.

— Ոչ թե կրակում եմ, այլ լուսնի տրամագիծն եմ չափում։

Երկրորդ դասարանի աշակերտ փոքրիկ Աշոտիկը զարմանքից մինչև անգամ բերանը բաց արեց. «Ահա թե ինչպիսի մարդ է եղել Հրաչիկը, երկրի վրա կանգնած ինչ-որ բան է չափում, որը լուսնի վրա է գտնվում, իսկ ինքը իսկի չի էլ իմացել այդ մասին»...

Բագրատը բացագանչեց.

— Պա՛հ, դո՞ւ պիտի չափես լուսնի տրամագիծը, չէ՞ որ այդ վաղուց հայտնի է...

Բայց Աշոտիկը նույնիսկ դրանից հետո էլ չհիասթափվեց։ Մանավանդ, որ Հրաչիկը շատ լավ պատասխանեց.

— Ես ուզում եմ ինքս չափել, որ ավելի համոզվեմ,— ասաց նա։

Իսկ փոքրիկ Աշոտիկը սիրում էր մի փոքրը չափազանցնել։ Եվ նա տուն գնալով այդ օրը հայտարարեց.

— Մամա՛, Հրաչիկը շուտով կգնա լուսին, իսկ ինձ էլ խոստացավ իր հետ տանել։ Ինձ համար ճանապարհի ուտելիք պատրաստիր։

Ո՞վ է իմանում, գուցե Աշոտիկը բոլորովին չէր էլ հնարում, գուցե պարզապես Հրաչիկը նրա հետ կատակ էր արել, և նրան հավատացրել, որ այդ չափումներն անում է, որովհետև պատրաստվում է դեպի լուսին մեկնել։

Այդպիսի տղա էր Հրաչիկը։



★

Եվ ահա թե մի օր ինչ պատահեց։ Գյուղում սկսվել էր ցորենի բերքահավաքը և երեխաները գնացին դաշտ։ Հնձվող ցորենից օդի մեջ հաճելի բուրմունք էր տարածվել։ Այդ տարի կոլտնտեսականները սպասում էին նախորդ տարվանից ավելի բարձր բերք։ Դաշտում տոնական տրամադրություն էր տիրում։ Անվերջ այս ու այն կողմից լսվում էին երգի և ուրախ կատակների ձայներ։ Տղաները հանկարծ նկատեցին, որ մաթեմատիկոս Հրաչիկը լուռ կանգնած ինչ-որ բան է մտածում։

— Երևի էլի հաշվում է,—ծաղրեց Վարդանը։

— Հաշվում է, թե քանի՞ հասկ կա դաշտում։

Հրաչիկն սկզբում ուշադրություն չէր դարձնում ընկերների վրա, թվում էր, թե իսկի նրանց չի էլ լսում. բայց հանկարծ նա իր մոտ կանչեց տղաներին։ Նրա ձեռքին մի սովորական հասկ կար.

— Ես հաշվեցի,— ասաց Հրաչիկը,— թե քանի՞ այսպիսի հասկ կարող է լինել մեր դաշտերում։

Միքայելն սկսեց հաղթական ձևով ծիծաղել։

— Ես չասացի՞, թե նա հաշվում է դաշտում եղած հասկերի քանակը։

— Ես հաշվեցի, թե քանի հասկ կա մեր դաշտում,— պատասխանեց Հրաչիկը,—սա այն հասկերից է, որ ցորենը հավաքելուց հետո մնում է դաշտում։ Ամեն մի հեկտարի վրա մնում է երեք հարյուր հասկ։ Նշանակում է մեր կոլտնտեսության բոլոր ցանքադաշտերում, որոնց ընդհանուր տարածությունը ութ հարյուր հեկտար է, մնում է երկու հարյուր քառասուն հազար այսպիսի հասկ, կամ երկու հազար հարյուր վաթսուն կիլոգրամ ցորեն, եթե նկատի ունենանք, որ մի հասկը կշռում է ամենաքիչը 6 գրամ։

Ավելորդ է պատմել այն խոսակցությունը, որ եղավ Հրաչիկի հայտարարությունից հետո։ Կարևորն այն է, որ գյուղի երեխաները դրանից հետո ամեն օր դաշտ էին դուրս



գալիս, բայց ոչ թե կողմնակի մարդու նման միայն դիտելու համար։

Նրանք հասկ էին հավաքում, կոլտնտեսականների համար ջուր տանում, աշխատում էին որպես կապավորներ, հնձվորների համար թարմ թերթեր էին բերում և շատ ուրիշ օգտակար աշխատանքներ կատարում։

Մաթեմատիկոս Հրաչիկն ամեն ինչ հաշվել էր, և մանրամասն գիտեր, թե երեխաների կատարած աշխատանքը ինչքան օգուտ է տալիս կոլտնտեսությանը։

# Գարուն

Նորից եկել է
Սիրելի գարուն,
Ու հետը բերել
Ծաղիկներ սիրուն:

Թռչուններն իրենց
Բներն են հյուսում,
Ծառերի ճյուղին
Անուշ երգ ասում:

Իսկ մեր հարազատ
Դպրոցի բակում,
Բոլորս փոքրիկ
Ծառեր ենք տնկում:

ԱՐՄԵՆԱԿ ՂԱԶԻՆՅԱՆ
(Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղի միջնակարգ դպրոցի 5-րդ «ա» դասարանի աշակերտ)




ՍՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

*Պապենական խրճիթի մի անկյունում, հողե հատակին դրված ջուլհակի դազգահի մոտ, գլխահակ նստել էր պատանի Նիքոն։ Նա դժգույն էր, խորասուզված մտքերի մեջ։ Լուռ վիշտը դեմ էր առնում կոկորդին և զսպված արտասուքը լճանում էր նրա խոշոր, մռայլ աչքերում։ Նախորդ գիշեր դարանակալ ֆաշիստները գյուղամիջում ձերբակալել էին հորը՝ պարտիզանական ջոկատի հետախույզ Թասո Յորղիադիսին և վաղ առավոտյան կախաղան բարձրացրել։*

*Խրճիթի մյուս անկյունում, կիսամութի մեջ անխոս ու տխուր նստած, արտասվում էին պատանի հովվի մայրը՝ Մարիան և ութսունամյա տատիկը։*

*Դռան շեմքին հոգնած փռվել էր Նիքոյի անբաժան ընկերը՝ մոխրագույն, բրդոտ գամփռը՝ Տիգրիսը։ Դունչը դրած խոշոր, բրդոտ թաթերին, կիսախուփ աչքերի թախծոտ հայացքով՝ նա նայում էր իր փոքրիկ, վշտահար բարեկամին, ասես նրանից բացատրություն էր պահանջում իրեն անհասկանալի, սարսափելի պատահարի մասին…*

*Տիգրիսը նոր էր վերադարձել հրապարակից, ուր օրվա ընթացքում այցելել էր մի քանի անգամ։*

*Դանդաղ անցնում էին վայրկյանները։ Նիքոյի աչքի առաջ միշտ գյուղի հրապարակն էր, կենտրոնում կաղնու դարավոր ծառը, որի ճյուղից կախված ճոճվում էր հայրը՝ կրծքին մի տախտակ և վրան մի բառ՝ «պարտիզան»…*

* * *

*… Մակեդոնական լեռնային գյուղի վրա արդեն փռվել էր խավար գիշերը։ Լամպի աղոտ, դողդոջուն լույսի տակ Նիքոն աչքերը փակ նստել ու նորից էր հիշում կախաղանի առաջ հոր արտասանած վերջին խոսքը.*

*— Զի՛թոի էլեֆտերի էլլադա՝ Կեցցե՛ ազատ Հունաստանը…*

*Մի՞թե ֆաշիստներին հաջողվեց ընդմիշտ խեղդել հոր ձայնը…*

*Նիքոն թաքուն դիտեց վշտից կծկված տատիկին ու մորը, ապա ինչ-որ բան վճռելով ընդոստ վեր կացավ տեղից, գնաց ներքնատուն, մի պահ մտքերով տարված կանգ առավ, հետո շտապ հավաքեց ինչքան պարան կար ներքնատան պատից կախ, լուսամուտից վերցրեց թիթեղե մի կլոր տուփ ու վրձին, ուսը գցեց պարանները և խավար գիշերով գյուղամեջ դուրս եկավ։*

*Տնից բավական հեռանալուց հետո նա նկատեց, որ Տիգրիսն անշշուկ հետևում էր իրեն։ Նրանք հասան լեռնային գետին, անցան նեղ, փայտե կամրջակով և սկսեցին քարափով մագլցել ժայռանիստ բարձունքը։*

*Տիգրիսը հաճախ առաջ էր նետվում, հոտոտում հողը և մերթ ընդ մերթ խուլ, անհանգիստ ձայներ հանելով, Նիքոյին նախազգուշացնում, որ ուշադիր լինի, հետևի իրեն։ Երբեմն Նիքոն սայթաքում էր մթության մեջ. ոտքը դիպչում էր արևից ու անձրևներից քայքայված քարերին. քարերը գլորվում էին և խուլ աղմուկով ընկնում անդընդախոր ձորը։ Այդ ժամանակ գամփռը հասնում էր, լայն մեջքը դեմ տալիս Նիքոյի ծնկներին՝ նրան անդունդ գահավիժելուց պաշտպանելու համար։ Վերջապես նրանք հասան քարափի պռնկին՝ ամենաբարձր քարաժայռին։*

*Տիգրիսն անհանգիստ էր։ Այս անթափանց խավարին Նիքոն ի՞նչ գործ ուներ ամայի վայրում՝ ահավոր անդունդի եզրին։*

Նրանք նստեցին ժայռին։ Նիքոն քանդեց պարանը և իրարից քառորդ մետր հեռու բազմաթիվ հանգույցներ կապեց։

Շուտով հանդիպակաց լեռան ուսից բարձրացավ լիալուսինը և իր դեղնավուն լույսով ողողեց լեռներն ու քարափը։ Այնժամ Նիքոն վեր կացավ, մի քանի ամուր օղակներով պարանն անցկացրեց ուղտի վզի նման երկարած բարձր քարաժայռից, պարանի մյուս ծայրը կապեց մեջքին, կարմիր ներկով լիքը տուփը կախեց վզից, վրձինն ամրացրեց գոտկատեղին և իր լայն ափերով պարանի հանգույցներից մեկ առ մեկ բռնելով՝ հինգ մետր ցած իջավ ու կախվեց օդի մեջ։

Գամփռը, ոտքերը պրկած և ականջները գլխին սեղմած, տագնապով ու կլանչելով դիտում էր տիրոջ խիստ վտանգավոր և տարօրինակ գործողությունները։

Նիքոն կանգ առավ մի մեծ, ասես ձեռքով տաշած հարթ ժայռի առաջ, որ գյուղից լավ էր երևում։ Նա ոտքի մատները հենեց ժայռի հորիզոնական ճեղքվածքին, ապա վրձինը հանեց, թաթախեց ներկի մեջ ու լուսնի լույսի տակ սկսեց ինչ-որ խոշոր-խոշոր տառեր նկարել։

Ներքևում ահեղ շառաչում էր լեռնային գետը։ Կիրճում փչում էր սառը քամին։

Օդի մեջ կախ ընկած Նիքոն ուժեղ քամուց երբեմն տարուբերվում էր։ Նման դեպքերում երկյուղից սարսռում էր պատանի հոգին։ Եթե հանկարծ պոկվե՞ր պարանը։ Նա կընկներ խոր, շատ խոր անդունդով հոսող սև ջրերի մեջ, ջարդ ու փշուր կլիներ ապառաժների վրա և գետի հոսանքն իր ոլորապտույտի մեջ կտաներ նրա անկենդան, արյունաշաղախ մարմինը։

Բայց այդ մասին նա երկար չմտածեց։ Վայրկենապես չքացավ երկյուղը։ Նա աշխատում էր միայն պահպանել իր հավասարակշռությունը և հատուկ խնամքով նկարել խոշոր տառերը։

Քարափի վերևից Նիքոն երբեմն լսում էր Տիգրիսի անհանգիստ վնգստոցը, տեսնում ժայռի պռնկից երևացող դունչը և ձայն տալիս, որ հանգստանա։

Երբ չորս տառից բաղկացած առաջին բառը գրել էր, մի մետր տարածությունը վերջացավ։ Երկրորդ բառը գրելու համար անհրաժեշտ էր աջ շարժվել։ Նիքոն հարկադրված եղավ վեր բարձրանալ և նորից, Տիգրիսին տագնապի մատնելով, ժայռից կախվել մետրուկես աջ։ Մինչև լուսաբաց հարկավոր էր ավարտել աշխատանքը։ Նա շտապում էր։

Լարված վիճակից ու հոգնածությունից Նիքոյի գլուխը մի պահ ուժեղ պտտվեց, գիտակցությունը մթագնեց։ Բայց գերագույն ճիգեր գործադրելով տիրապետեց իրեն և շարունակեց իր գործը։

Մոտ երեք ժամ տևեց այդ ծանր ու վտանգավոր աշխատանքը։ Գուցե Նիքոն դեռ շարունակեր աշխատել, գեղեցկացնել տառերը, եթե ներկը չսպառվեր։

Գործն ավարտելով՝ պատանին մի քանի րոպե հանգստացավ, ուժ հավաքեց, ապա նորից հանգույց առ հանգույց սկսեց վեր մագլցել՝ մերկ ոտները դեմ տալով ուղղահայաց ժայռին։ Վերջապես նա հասավ ժայռի եզերքին։

Նրա վերելքին հետևող Տիգրիսը ամբողջ մարմնով դողում էր։ Իր առաջ տեսնելով խավար անդունդի վրա կախված տիրոջը, որ վերջին ուժերը լարած աշխատում էր բարձ-



րանալ ժայռի եզերքով, գամփռը հանկարծ ամբողջ ատամներով բռնեց նրա շորերից, առջևի թաթերով հենվեց թեք ժայռին և Նիքոյին ուժեղ թափով քաշեց քարափի վրա։

Նիքոն հաղթահարեց դժվարությունը և երեսնիվայր ընկավ գետնի վրա։ Տիգրիսն ուրախ ճիչ արձակեց և սկսեց լիզել նրա հագուստներն ու ձեռքերը։

— Շատ էիր մտածո՞ւմ իմ մասին, Տիգրիս,— հուզված շշնջում էր Նիքոն՝ գամփռի գլուխը սեղմելով կրծքին։

Մի քիչ հանգստանալուց հետո՝ Նիքոն մեջքից արձակեց պարանը, կոնաձև ժայռից քանդեց պարանի օղակները, հավաքեց ամեն ինչ և լուսաբացից առաջ տուն վերադարձավ։

* * *

Թախիծը մշուշի պես պատել էր ամբողջ գյուղը։ Վշտահար ծերունիները, կանայք ու երեխաները վաղ առավոտյան անցնում էին գյուղի հրապարակով՝ մռայլ ու լուռ դիտելով կախաղանից ճոճվող պարտիզան Թասո Յորղիադիսին։

Ահա կորաքամակ տատիկի հետ անցնող մի նիհար, վառվռուն աչքերով պատանի կանգնեց հրապարակում, հանկարծ բռնեց տատիկի ցուպը և ձեռքով ցույց տալով քարափի մյուս կողմում ժայռի վրա կարմիր տառերով գրված բառերը, բարձրաձայն կարդաց։

Այդ բառերը լսելով՝ անակնկալի եկած անցորդները կանգ առան հրապարակում և տագնապով նայեցին պատանու ցույց տված ուղղությամբ։ Նրանց սրտերը տրոփեցին։

Ոգևորիչ լուրն արագորեն տարածվեց գյուղում։ Կանայք, երեխաներն ու ծերունիները կախաղանի մոտ հավաքված երկյուղից ու երջանկությունից փայլող հայացքները սևեռում էին անդունդին իշխող ժայռին, մտքերում բերկրանքով կարդալով կարմիր մակագրությունը։



Չէ, ինչ որ դիտում էին ու կարդում տեսողության պատրանք չէր։ Հարթ, կապույտ քարաժայռի վրա կարմիր յուղաներկով, անհավասար տառերով նկարված էր երեք բառ.

— Զի՛թոի էլեֆտերի էլլադա...

Մի ծերունի ձեռնափայտին հենված, մշուշոտ հայացքը քարափին, շշնջաց.

— Սա հրաշք է, զավակնե՜րս... Հրա՜շք... Մեր Թասոյի կախաղանի առաջ արտասանած վերջին բառերն են դրանք... Դա մարդկային ձեռքի գործ չէ։ Տեսնո՞ւմ եք, զավակնե՛րս, մարդու ձեռք չի հասնի այնտեղ. դա ուղղակի հրաշք է...

Եվ ծերունին ուրախ հուզումից դողալով նայում էր համագյուղացիներին։

Ֆաշիստները տագնապով նկատեցին կախաղանի դիմաց՝ քարափի գագաթին բարձրացող ժայռի վրա գրված այդ մակագրությունը, որ դահիճների համար հնչում էր որպես սպառնալի նախազգուշացում։

Մարիային և պառավ տատի-

կին ցավակցություն հայտնելու եկող գյուղացիներն այդ մասին պատմեցին նրանց, հպարտությամբ հայտարարելով, որ կատարված հրաշքը երևի պարտիզանների գործն է, որ նույն պարտիզան-էլասականները շուտով գյուղ կիջնեն Թասոյի վրեժը լուծելու համար։

Նիքոն անխոս լսում էր գյուղացիների պատմածները։ Միայն մայրը՝ Մարիան նկատեց, որ արտակարգ հուզումից ու ինքնագոհությունից վառվում էին որդու խոշոր, թուխ աչքերը…

Երբ հյուրերը գնացին, Մարիան գրկեց որդուն, ուզեց ջերմ, հոգեբուխ խոսքեր ասել, բայց չկարողացավ. կոկորդում խեղդվեց ձայնը։

— Նիքո՛, զավա՜կս, հայրդ գոհ կմնար քեզանից…,— վերջապես շշնջաց նա և արտասուքի խոշոր կաթիլներ գլորվեցին նրա ղժգույն այտերից…

Նիքոն լուռ դիտեց մոր հյուծված դեմքը, արցունքոտ աչքերը, որոնք և՛ վիշտ և՛ մայրական հպարտություն էին արտահայտում, ու մեղմ ասաց.

— Լաց մի՛ լինի, մամա՛, լաց մի՛ լինի… Դեռ ես վրեժ կլուծեմ դահիճներից… Դեռ նրանք կտեսնե՜ն…

Կեսօրից հետո, երբ Նիքոն նորից տնից դուրս եկավ գյուղամեջ, ետևից լսեց մի ծանոթ, մեղմ մռոց։ Տիգրիսն էր։ Նրանք իրար նայեցին ու հասկացան միմյանց։ Միևնույն տեղն էին գնում։

— Ինչո՞ւ չմնացիր տանը։ Տիգրի՛ս,— մեղմ հանդիմանեց պատանին,— մաման ու տատիկը լաց են լինո՞ւմ, հա՞, Տիգրի՛ս…

Գամփռը նայում էր ուղիղ Նիքոյի աչքերի մեջ, ասես հասկանալով փոքրիկ տիրոջը։ Նա թեթև ցնցեց իր գանգուր բուրդը, որ առատորեն կախված էր մեջքից ու կողերից, տարուբերեց պոչը և կրծքի խորքից մի խուլ ձայն հանեց, որի մեջ զգացվում էր և՛ վիշտ, և՛ սպառնալիք…

Նիքոն ու գամփռը հասան գյուղի հրապարակը։ Նրանք մի փոքր հեռու տեսան կաղնու հաստ ճյուղից կախված Թասոյին…

Ծանրաքայլ մոտեցան։ Գամփռը մի երկու փոքրիկ շրջան կատարեց կախաղանի տակ, հոտոտեց տիրոջ ոտքերը, ապա նստեց ետևի թաթերի վրա և հայացքը կախաղանին՝ սրտակեղեք կլանչեց…



Ժամապահը հայհոյեց, գետնից քար վերցրեց գամփռին հարվածելու, հեռացնելու համար։ Տիգրիսը նկատեց այդ, բայց տեղից չշարժվեց։ Դունչը օդի մեջ տնկած և աչքերը սևեռած կախաղանին՝ նա ավելի երկար ու տխուր կլանչեց։ Իսկ երբ ժամապահը քարով հարվածեց, գամփռը ցավ զգալով՝ գլուխը դանդաղ շուռ տվեց դեպի նա, աչքերը բոցավառվեցին և ոստյուն կատարելու պատրաստվելով խուլ մռնչաց։

— Տիգրի՛ս,— այդ միջոցին հնչեց Նիքոյի ձայնը,— բռնի՛ր գայլին, սպանի՛ր…

Գայլ բառը և իրենից պահանջվածն ասես հասկացավ Տիգրիսը։ Նա ոտքի ելավ, ահեղ մռնչոցով ցնցվեց։ Վերևի շրթունքը վեր քաշվեց ու պրկվեց՝ մերկացնելով սպիտակ ժանիքները, մեջքի մազերը փշաքաղվեցին ու քթի մաշկը կնճռոտվեց։ Այն ժամանակ պատանի հովիվն ու իր գամփռը միաժամանակ հարձակվեցին ժամապահի վրա, որ ավտոմատն էր ուսից հանում։

Նիքոն քարով խփում էր ժամապահին։ Զայրույթից հսկայացած Տիգրիսը սպիտակ ժանիքները ցցած՝ ծառացել էր հրացանակրի դեմ։

— Այդպես, Տիգրի՛ս, այդպե՜ս, պատառ-պատառ արա գայլին,—լսվում էր պատանու տագնապալի ձայնը։

Գամփռն ավելի ու ավելի կատաղելով, գզգզում էր ժամապահին։

Ութսունամյա մի ծեր գյուղացի, որն այդ միջոցին անցնում էր հրապարակով, կանգ էր առել ու աչքերը կկոցած՝ հպարտ դիտում էր Նիքոյի ու Տիգրիսի մենամարտը ֆաշիստի հետ։

—Է՜խ, թե երիտասարդ լինեի՛,— դողդոջուն շրթներով մրմնջում էր նա, հայացքը կռվողներին։

Բայց ահա ամբողջովին գզգզված ու արյունոտված ժամապահին հաջողվեց մի քանի քայլ ետ գնալ և ավտոմատից կրակել։ Արյունից կարմրեց գետինը։ Գամփռը ժամապահի արձակած գնդակից վիրավորվել էր։



Պատանին տագնապով տեսավ այդ, գլուխը պտտվեց և աչքերը մի րոպե մթնեցին։

— Տիգրի՛ս, Տիգրի՛ս,— ուշքի գալով, համարյա լացակումած աղաղակեց նա և նույն վայրկյանին քարը ձեռքին հարձակվելով, գլխից վիրավորեց ժամապահին։

Կրծքից վիրավոր գամփռը չնահանջեց, չհեռացավ կռվի դաշտից, հակառակ պատանու ցանկության։ Նիքոն ինքը մենակ կկռվեր ֆաշիստի դեմ, միայն թե ազատվեր Տիգրիսը, միայն թե փրկվեր նրա կյանքը…

— Տիգրի՛ս, փախի՛ր, Տիգրի՛ս։

Տիրոջ ձայնը լսելով, Տիգրիսը բոլոր ուժերը հավաքեց ու մի անգամ էլ ցասումով ցատկելով կրակող ֆաշիստի վրա, ամուր բռնեց նրա կոկորդից, ժանիքները խոր մխրճեց մինչև նրա քներակը և մի պահ այդպես ծառացած մնաց։ Նրա կրծքից կաթկթում էր արյունը… Ապա մեջքին իջած խզակոթի հարվածից, թե թափած արյունից թուլանալով, նա բաց թողեց մահամերձ ֆաշիստի կոկորդը, մոտեցավ Նիքոյին, վնգստալով ինչ-որ բան ուզեց հասկացնել, արյունոտ լեզվով լիզեց նրա հագուստներն ու ձեռքերը և ետևից արյան շիթեր թողնելով, գնաց դեպի կախաղանը. նստեց ետի ոտքերի վրա, դունչը տնկեց մահացած տիրոջ կողմը, կլանչեց երկար-երկար ու անկենդան փռվեց նրա ոտքերի տակ… Անշնչացած գետին տապալվեց նաև ֆաշիստ ժամապահը։

Կրակոց լսելով, շուտով գերմանական ժամապահին օգնության հասան ֆաշիստները, բռնեցին պատանուն, ոլորեցին թևերը և անխնա ծեծելով տարան գետափին գտնըվող մի նկուղ, որն օգտագործում էին որպես բանտ։

Հիտլերյան գազազած սպան հայտարարեց, որ հետևյալ օրը նույն կաղնուց հոր կողքին կախաղան է բարձրացվելու Նիքոն։

Տագնապի մեջ էին Նիքոյի մայրն ու տատիկը, նրանց հետ և լեռնային ամբողջ գյուղը։

(Շարունակելի)



*ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ*

Տոն օրերին, Բեռլինում,
Մեծ պուրակում ստվերոտ,
Հանդիպեցին մի շարքում
Երկու տղա կրակոտ:
Մեկը՝ Խոզեն պարտիզան,
Մյուսը՝ Լին չինացի,
Մեկն՝ ափերից Բիսկայան,
Մյուսն ազատ երկրացի:
Եվ կրծքերին երկուսի՝
Աղավնիներ սպիտակ,
Կանգնել էին ուս-ուսի
Երկու ընկեր ծառի տակ:
Բայց թե իրար ի՞նչ ասեն,
Ինչպե՞ս խոսեն իրար հետ,
Իրենց սերը հաղորդեն,
Վառ մտքերը լուսավետ:
Խոզեն բռունցքն իր հանկարծ
Նետեց վերև առնացի՝
— Վի՛վա Ստալին.— նա ասաց:
— Վանսո՛ւյ*),— գոչեց չինացին:
Այդ վայրկյանից արևշող
Նրանք իրար հասկացան.
Լին՝ գերազանց սովորող,
Խոզեն՝ խիզախ պարտիզան:
Դարձավ զրույցը խնդուն
Իրենք՝ ուրախ, ժպտերես,
Մեկը գոչեց՝— Մաո Ցզե-դո՛ւն...
Մյուսն ասաց՝— Դոլո՛րես...
Լին մի դպրոց նկարեց
Խճի վրա մի շյուղով,
Եվ նստարան էլ գծեց,
Որ պարզ լինի միտքը ծով:
Տխրեց մի պահ Խոզեն քաջ,
Ջնջեց դպրոց, նստարան.

*Նկ. Բ. ՔՈԼՈՋՅԱՆԻ*

Այսինքն, թե՝ — Մեր առաջ
Փակ են դպրոց, լսարան:
-- Խաղաղությո՛ւն,-- գոչեց Լին,--
Թշնամին կխորտակվի՛...
— Խաղաղությո՛ւն, Ստալի՛ն,
Մեր դեմ ճամփան չի՛ փակվի:




Ապա որպես մի դրոշ
Լին իր ձեռքը վեր պարզեց,
Գրկեց մեջքը ընկերոջ,
Առաջ վազեց ու երգեց...
Ու երգեցին միասին
Երգը ազատ աշխարհի...
Ու միացան շարքերին
Խաղաղության բանակի:
Եվ ինչքա՛ն քիչ բան էր պետք,
Որ միմյանց հասկանան՝
Լին՝ չինացի աշակերտ,
Խոզեն՝ խիզախ պարտիզան...

---

**) Տասը հազար տարվա կյանք!*



# ԾՈՎԵՐՈՎ ՈՒ ԳԵՏԵՐՈՎ



ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ

Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ

Բոլորին լավ հայտնի է ռուս մեծ նկարիչ Ռեպինի «Բուռլակներ» նշանավոր նկարը։ Արևառ ու հոգնաբեկ դեմքերով, աչքերը թախիծով ու տրտմությամբ լի մարդիկ ափով քաշ են տալիս մեծ նավակը... Հեշտ չէ գետի հոսանքին հակառակ նավակ քաշ տալը... Բայց ավելի ծանր էր բուռլակների համար, երբ պետք էր նավակը ուղղակի գետնի վրայով քաշ տալ մի գետից մյուսը։ Իսկ այդպես հաճախ էր լինում, երբ պետք էր վաճառականների ապրանքը Վոլգայի վրա գտնվող մի քաղաքից Դոնի վրա գտնըվող մի այլ քաղաք տեղափոխել։

Զարմանալի չէ, որ ռուս ժողովուրդը վաղուց երազում էր Վոլգան Դոնի հետ միացնելու մասին։ Մոտ երեք հարյուր տարի առաջ Պետրոս առաջին ցարը որոշեց այդ երկու գետերի միջև ջրանցք փորել։ Այստեղ ուղարկեցին մի քանի տասնյակ հազար ճորտ գյուղացիներ և զինվորներ։ Բայց ի՞նչ աշխատանք կարող էր լինել, երբ ինքը շինարարության ղեկավարը, Աստրախանի իշխան Գոլիցինը ասաց, որ եթե աստված գետերին որևէ ուղղություն է տվել, ապա մարդը իրավունք չունի աստծու գործերի մեջ խառնվելու։

Այդպես էլ շինարարությունը չավարտվեց։

Մի անգամ էլ այստեղ աշխատանքներ սկսվեցին Լենինի առաջարկով 1918 թվին։ Մեր հայրենիքի համար ծանր ժամանակ էր այդ։ Թշնամին մոտենում էր Ստալինգրադին, որն այն ժամանակ Ցարիցին էր կոչվում։ Ընկեր Ստալինը, որ ղեկավարում էր Ցարիցինի պաշտպանությունը, ստիպված էր աշխատանքները դադարեցնել։

Եվ, վերջապես, երրորդ անգամ սկսված աշխատանքները դադարեցին Հայրենական պատերազմի տարիներին, գերմանական ֆաշիստների հարձակման պատճառով։ Դեռ մարտեր էին մղվում հերոս-քաղաք Ստալինգրադի մոտ, իսկ Մոսկվայում, ընկեր Ստալինի առաջարկությամբ պատրաստվում էր Վոլգա-Դոնի նոր նախագիծը։ 1948 թվին եկան առաջին շինարարները, իսկ 1950 թվին Սովետական կառավարությունը որոշեց ջրանցքի շինարարության ժամկետը երկու տարով կրճատել և այն շահագործման հանձնել 1952 թվի գարնանը։

Այսպիսով, կոմունիզմի մեծ կառուցումներից՝ Վոլգա-Դոնը շուտով շահագործման է հանձնվելու։ Աշխարհում այսպիսի արագությամբ դեռ աշխատանք չի կատարվել։ Ավելի փոքր կառուցումները կապիտալիստական երկրներում տասնյակ տարիներ են տևում։ Իսկ Վոլգա-Դոնը, որ բաղկացած է մեծ նավարկելի ջրանցքից, հսկայական ամբարտակից, հզոր հիդրոկայանից, շլյուզներից, կամուրջներից և ոռոգման ջրանցքներից, կառուցվեց ընդամենը չորս տարում։

Եթե առաջ մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվան ջրային ճանապարհներով կապված էր միայն Բալթիկ, Սպիտակ և Կասպից ծովերի հետ, ապա այժմ Մոսկվայից կարելի է նավով հասնել նույնիսկ Ազովի և Սև ծովերի վրա գտնվող ցանկացած քաղաքը։

Փորձենք պատկերացնել Մոսկվայից նավով Սոչի գնացող ուղևորի ճանապարհորդությունը։ Ահա նա նստում է հատուկ, Վոլգա-Դոնով նավարկելու համար պատրաստված գեղեցիկ ջերմանավը։ Այդ ջերմանավում 500 ուղևոր կարող է տեղավորվել։ Նրա վրա կան գեղեցիկ ու հարմարավոր նավախցեր, ռեստորան, պարի սրահներ, մանկական խաղերի սենյակներ, լողանալու ջրավազան, գրադարան և կինոյի դահլիճ։ Այդպիսի ջերմանավով մի ամբողջ ամիս էլ որ ճանապարհորդես, չես հոգնի։

Ջերմանավը կլողա նախ Մոսկվայի անվան ջրանցքով մինչև Վոլգա։ Հետո ճանապարհորդությունը կշարունակվի Վոլգայի հոսանքով ներքև։ Ահա և Գորկի քաղաքը, այստեղ էլ, Վոլգայի ափին, գտնվում է այս

ամենահարմար ջերմանավը կառուցող «Կրասնոյե Սորմովո» գործարանը։

Հետո ճանապարհը կանցնի Ժիգուլյան լեռների միջով և Կույբիշև քաղաքի մոտով։ Մեր ուղևորը կտեսնի Կոմունիզմի մեծ կառուցումներից մեկը՝ Կույբիշևյան հիդրոկայանի շինարարությունը։

Կոմունիզմի մեծ կառուցումներից մյուսի՝ Ստալինգրադյան հիդրոկայանի աշխատանքները կերևան չհասած հերոս քաղաք Ստալինգրադին։

Ահա և ջերմանավն անցավ Ստալինգրադը։ Դեռ մի քանի տարի առաջ այստեղ մերկ տափաստանից բացի ոչինչ չկար, իսկ հիմա ուղևորը տեսնում է Վոլգա-Դոն ջրանցքի գեղեցիկ սկիզբը։ Այստեղից ջերմանավը հարյուր կիլոմետր պիտի անցնի նոր ջրանցքի տրասսայով։ Այս այն տեղն է, որ Վոլգան և Դոնը ավելի են իրար մոտենում։ Բայց բանն այն է, որ Դոնը 44 մետրով բարձր է Վոլգայից, իսկ նրանց միջև մի բարձրավանդակ կա, որը ևս 44 մետրով բարձր է Դոնից։ Ինչպե՞ս կանցնի մեր ջերմանավը այդ բարձրավանդակը։ Շատ հասարակ՝ շլյուզներով։ Ահա ջերմանավը մոտենում է մետաղե մեծ դարբասներին, որոնք երեք հարկանի տան բարձրություն ունեն։ Դարբասների ետևում բետոնե մեծ կամերա կա։ Երբ ջերմանավը կմտնի այդ կամերայի մեջ, նրա ետևից դարբասները կփակվեն, իսկ հզոր պոմպերը կամերան կլցնեն ջրով։ Հենց այս կամերան էլ շլյուզ է կոչվում։ Ջուրն այստեղ կսկսի բարձրանալ, իսկ նրա հետ կբարձրանա և ջերմանավը։ Երբ կամերան կլցվի մինչև պռունկները, կբացվեն նրա հակառակ ծայրին գտնվող դարբասները և ջերմանավը այնուհետև կգնա ջրանցքով։

Այդպիսի ինը շլյուզներով, ինչպես սանդուղքով, ջերմանավը կբարձրանա Վոլգայի մակերեսից մոտ 90 մետր։ Հետո նույնպիսի շլյուզներ նրան կօգնեն իջնելու Դոնի մակարդակին։ Ջրանցքի տրասսայում 13 մեծ շլյուզ կա։ Ջերմանավը մի քիչ էլ լողաց և մեր ուղևորը զարմանքով տեսավ, որ Դոնով լողալու փոխարեն ջերմանավն ընկավ մի մեծ ծով։ Ջերմանավը նույնիսկ սկսեց օրորվել, ինչպես ծովում։ Որտեղի՞ց տափաստանում հայտնվեց այս ծովը։ Բանն այն է, որ Վոլգա-Դոնի շինարարները կառուցեցին ոչ միայն ջրանցք, այլ և հսկայական ամբարտակ, որը Դոնի ջուրը 30 մետրով բարձրացրեց։ Ջուրը ողողեց չոր տափաստանը և կազմեց Ցիմլյանսկի ջրամբարը, կամ ինչպես անվանում են Ցիմլյանսկի ծովը։ Այդ ծովը երեք անգամ մեր Սևանա լճից մեծ է։

Վերջապես ջերմանավը կտրեց Ցիմլյանսկի ծովը և հասավ ամբարտակին։ Ա՜յ քեզ ամբարտակ... Երկա՜ր, երկա՜ր ու շատ բարձր։ Ամբարտակի վրայով անցնում են գնացքներ, իսկ ջուրը ամբարտակից թափվելով աշխատեցնում է Ցիմլյանսկի հզոր հիդրոկայանի տուրբինները։ Այդ էներգիան օգտագործվում է շլյուզների պոմպերը աշխատեցնելու համար։ Եվ ոչ միայն պոմպերը... էլեկտրական էներգիա ստացան շրջակայքում գտնվող քաղաքներն ու գյուղերը, այդ էներգիան էլեկտրագնացքներ է աշխատեցնում, օգտագործվում է գյուղատնտեսության մեջ։ Բայց ջերմանավն ինչպե՞ս կիջնի այդ հսկայական ամբարտակից։ Նորից օգնության են գալիս շլյուզները։ Այժմ մեր ուղևորը կլողա խաղաղ Դոնի ջրերով։ Ահա և Ռոստովը։ Իսկ այստեղից ծովով լողա ուր ուզում ես—Ղրիմ, Սոչի, Բաթումի։

Մենք, իհարկե, ամեն ինչ չպատմեցինք։ Ուրիշ շատ բան տեսավ իր ճանապարհին մոսկվացի ուղևորը։ Այդ մասին կարելի է



մի ամբողջ գիրք գրել։ Օրինակ, թե ինչպիսի անտառներ են ձգվում Վոլգա-Դոնի տրասայի երկարությամբ։ Չէ՞ որ այստեղով անցնում են պետական անտառաշերտերը. ջրանցքի ճարտարապետական հետաքրքիր կառուցվածքների մասին. այս աշտարակները, կամարները, կամուրջները արտացոլում են Ցարիցինի և Ստալինգրադի համար մղվող ճակատամարտերի հետաքրքիր էպիզոդները։ Այն շոգենավերի, բազմատեսակ բեռների մասին, որոնց հանդիպեց ջերմանավն իր ճանապարհին։ Շատ բան է կառուցվել այստեղ չորս տարվա ընթացքում։

Եվ ակամա հիշում ես Ռեպինի նկարի բուռլակներին կամ Պետրոս առաջինի բանվորներին։ Ի՞նչ խոսք, որ նրանք երազել անգամ չէին կարող Վոլգայի և Դոնի միջև այսպիսի հարմար ու գեղեցիկ ճանապարհի մասին։ Այսպիսի ճանապարհ կարող էին կառուցել միայն բոլշևիկները և սովետական մարդիկ։



# ՆԱՎԱՊԵՏԸ



ԱՂԱՎՆԻ

Նկ. Ռ. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆԻ

1

Նավապետին այս քաջարի,
Բակում ո՞վ չի ճանաչում,
Նա շարունակ մեր աշխարհի
Օվկիաններում է շրջում։

Շրջում է, և այն էլ փայտե
Այս տաշտակով հասարակ,
Որն իր ձեռքով է պատրաստել,
Վրան գրել «Ավրորա»։

Այս «Ավրորան» կաբսա չունի,
Ոչ էլ զրահն է պողպատ.
Բայց նավապետն այս անվանի
Նավարկում է անընդհատ։

Նավարկում է, բայց մի՛ կարծեք
Թե իսկական ծովերով.
Մեր լճակն է օվկիան դարձել,
Մեր աղբյուրը դարձել ծով։

Դե՛, ի՛նչ, եթե բակում մեր տան
Ունենք օվկիան, ծով ու գետ,
Մեր Եղիշեն տաս տարեկան
Էլ ինչո՞վ չի նավապետ...

Իսկ Արտավազդն ու Նորիկը,
Սոսը, Սուրիկն ու Արան,
Գոհարիկն ու Քնարիկը՝
Նավաստիներն են նրա։

2

Կես ժամ առաջ նավը նրանց
Ելավ ծովից Սպիտակ,
Ու սուլելով առաջ սուրաց,
Մտավ կապույտ մի ջրանցք։

Այդ ջրանցքը, ես չեմ ասի
Որ գետին է միանում,
Բայց Եղիշեն ճամփի կեսին
Կանգ էր առել Մոսկվայում...

Իսկ Մոսկվայից մի այլ ջրանցք
Նրան հարավ կբերի,
Դեպի մեծ գետն այն կապուտակ,
Որ մայրն է մեր գետերի։

Անձնակազմը զգաստ է խիստ,
Եվ կարգին է ամեն բան։
Ահա մտան նավահանգիստ,
Սուլեցին ու կանգ առան։

3

Մինչև նրանք այդ մայր գետում
Մի կես ժամով լողանան,
Մեծ քարտեզը բաց արեք դուք,
Ու կիմանաք այդ ճամփան,



Որ Սպիտակ ծովից ելնում,
Գալիս հասնում է Վոլգա,
Որի ափին մի մեծանուն,
Հռչակավոր քաղաք կա:

Այդ քաղաքի մասին նույնպես
Դուք շատ բաներ եք լսում,
Բայց անունը չեմ ասի ես--
Որոնեցեք քարտեզում...

Որոնեցեք, իսկ Եղիշեն,
Նավապետը մեր անահ,
Խարիսխները արդեն քաշել,
Պիտի առաջ սլանա:

4

Ստալինգրադի ծովն է ուզում
Նա այս անգամ մուտք գործել,
Բայց այդ ծովը մեր քարտեզում
Դեռ չեք գտնի, չփորձեք:

Քարտեզում դեռ չկա, սակայն
Կյանքում շուտով կունենանք,
Որ աղուտները Մերձկասպյան
Չմնան չոր ու պապակ:

Հիդրոկայան էլ կունենանք
Այդ նոր ծովի ափունքին,
Քաղաքներ նոր ու բարեկարգ,
Կանաչ դաշտեր ու այգի:

5

Այդպիսին է երկիրը մեր,
Աշխատասեր, ստեղծող,
Որ կառուցում է անվեհեր,
Իրար կապում ծով ու հող:

Որտեղ ծովի կարիք լինի,
Պահանջվի գետ, կամ ջրանցք,
Նախագծով մեծ Ստալինի
Մենք ստեղծում ենք դրանք:



Իսկ խաղասեր, աշխատասեր
Փոքրիկները մեր բակի,
Որ լճակը ծով են դարձրել
Ու նավ շինել տաշտակից,

Իրենց խաղով այդ մանկական
Նավարկել են սովորում,
Որ նավարկել կարողանան
Մեր ապագա ծովերում:



# ՖՐԵԴԵՐԻԿ ԺՈԼԻՈ-ԿՅՈՒՐԻ

Ֆրանսիական խոշորագույն ֆիզիկոս Ֆրեդերիկ Ժոլիո-Կյուրին ծնվել է 1900 թվականին։ Նա մի գիտնական է, որի կյանքը միաձուլվել է ժողովրդի կյանքի հետ։

Նա Փարիզյան կոմունարի որդի է։ Նրա հայրը կռվել է Շայոյի բլուրների վրա, վերսալցիների դեմ, Կոմունայի հաղթանակի համար։



Մեծ գիտնականը հենց սկզբից էլ բարեկամական ամուր կապեր է հաստատել Փարիզի բանվորների և բրետոնցի ձկնորսների հետ։ Նա բոլորից լավ գիտե, թե ի՞նչ մեծ բարիքներ կարող է բերել գիտությունը, եթե այն դրվի ժողովուրդների տրամադրության տակ։

— Գիտությունը,— ասում է նա,— կարող է վերացնել հիվանդությունները, մեքենայացնել և թեթևացնել աշխատանքը, փրկել միլիոնավոր կյանքեր, մարդկանց տալ լույս, ուրախություն...

— Սովետական Միության օրինակը,— շարունակում է նա,— աշխարհին ցույց տվեց, թե գիտության օժանդակությամբ ինչպես կարելի է մարդկային երջանկության հասնել. իսկ կապիտալիստական երկրներում գիտությունը օգտագործում են մարդկանց ոչնչացնելու համար։ Մի ռազմանավի համար ծախսված գումարով կարելի է հարյուր տարի շարունակ տասը գիտահետազոտական ինստիտուտ պահել, որոնք պայքարեին թոքախտի և քաղցկեղի դեմ։

Ժոլիո-Կյուրիի կարծիքով գիտությունը պետք է ծառայի մարդկությանը։

Աշակերտելով ֆրանսիացի մեծ գիտնական Պոլ Լանժևենին, նա ժառանգեց ոչ միայն նրա հիմնական տեսակետները, այլև առաջադիմական հայացքները։ Երբ 1917 թվականի պատմական օրերին «Ավրորայի» համազարկերը աշխարհին ավետում էին մի նոր, սոցիալիստական դարաշրջանի սկիզբը, երբ Ֆրանսիայում առաջադեմ մարդիկ ոգեվորվում էին օտարերկրյա զավթիչների դեմ Սովետական պետության մղած պայքարով, դեռևս ուսանող Ֆրեդերիկը աղմըկոտ միտինգներում կրակոտ ճառեր էր արտասանում, և պաշտպանում սովետների երիտասարդ ռեսպուբլիկան։

Ժոլիո-Կյուրին իր գիտական աշխատանքները սկսեց լեհ մեծ գիտնական Մարի Սկլոդովսկայա-Կյուրիի մոտ։ Այդտեղ նա ամուսնացավ նրա աղջկա՝ այժմ նշանավոր գիտնական Իրեն Կյուրիի հետ։

1935 թվականին նրանք իրենց գիտական գործունեության համար պարգևատրվեցին Նոբելյան մրցանակով։ 1939 թվականին Ժոլիո-Կյուրին ատոմային էներգիայի գծով մեծ գյուտ արեց։ Ֆիզիկոսների առաջ բացվեցին լայն հորիզոններ։ Հերքվեց կապիտալիստական աշխարհի, մանավանդ Միացյալ Նահանգների հետադեմ մարդկանց այն պնդումը, թե ատոմական գիտության ստեղծումը պատկանում է անգլիացիներին և ամերիկացիներին։ Գիտության այդ ճյուղի զարգացման մեջ խոշոր աշխատանք են կատարել բոլոր երկրների գիտնականները, մանավանդ սովետական երկրի գիտնականները։

Սակայն Ֆրեդերիկ Ժոլիո-Կյուրիին չըհաջողվեց շարունակել իր աշխատանքը։ Գերմանական ֆաշիստները զավթեցին Ֆրանսիան և խիստ հսկողության տակ առան մեծ գիտնականին։ Նրան հաճախակի ենթարկում էին երկարատև հարցաքննությունների։

*Բայց հայրենասեր գիտնականն արհամարհելով ամեն վտանգ, իր լաբորատորիայում ռումբեր էր պատրաստում դիմադրության ուժերի՝ ֆրանսիական հայրենասերների ջոկատների համար։*

*1942 թվականի գարնանը, մեծ գիտնականը ընդունվեց ֆրանսիական կոմունիստական պարտիայի շարքերը։*

*— Եթե ես բռնվեմ և գնդակահարվեմ, բոլոր դեպքերում ուզում եմ որպես կոմունիստ մեռնել,— ասաց Ժոլիո-Կյուրին։*

*Ֆրանսիայի ազատագրումից հետո, նա վերսկսեց գիտական աշխատանքները. բայց ամերիկյան իմպերիալիստները նրան հանգիստ չտվին։ Նա սկսեց անհաշտ պայքար մղել ատոմային էներգիայի խաղաղ նպատակների օգտագործման համար։ 1948 թվին նա փորձնական ձևով գործադրեց այդ էներգիան։*

*Ամերիկյան իմպերիալիստները սարսափահար եղան, որովհետև իրենց ձեռքից դուրս էր թռչում այդ գաղտնիքը։ Նրանց ճնշման տակ ֆրանսիական կառավարությունը Ժոլիո-Կյուրիին ազատեց ատոմային էներգիայի կոմիսարի պաշտոնից։ Նրանք կարծում էին, թե այդպիսով կլռեցնեն մեծ գիտնականին. բայց սխալվեցին։ Հիմնվեց խաղաղության կողմնակիցների համաշխարհային կազմակերպությունը։ Այդ կազմակերպության առաջին համագումարում Ֆրեդերիկ Ժոլիո-Կյուրին ընտրվեց նախագահ։*

*Պայքարը, խաղաղության հարյուր միլիոնավոր կողմնակիցների և նոր պատերազմի հրձիգների միջև, շարունակվում է։*

*Խաղաղության, կյանքի, մարդկային ապագա երջանկության համար պայքարողների առաջին շարքում գնում է Ժոլիո-Կյուրին, որն իր ամբողջ եռանդն ու ոգևորությունը ստանում է խաղաղության պատվար Սովետական հզոր Միությունից և ժողովուրդների մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինից։*

*Մեր դարը, գիտության մեծ կորիֆեյներ Լենինի և Ստալինի դարն է։ Ժոլիո-Կյուրին մեր ժամանակի ծնունդն է, գիտության և առաջադիմության, խաղաղության հաղթանակի ծնունդը։*

*Աշխարհի բոլոր խաղաղասեր ժողովուրդները, բոլոր բարի կամքի տեր մարդիկ մեծ ոգևորությամբ, հրճվանքով դիմավորեցին այն լուրը, որ խաղաղության այս անխոնջ մարտիկին, մեծ գիտնականին շնորհվեց խաղաղության Ստալինյան միջազգային մրցանակ։*

*ԳՐ. ՔԵՇԻՇՅԱՆ*

# ԵՐԿՈՒ ՀԱՆԴԵՍ

*ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ*

1

Վիշկաների աշխարհում
Բանվորներն են նավթագործ:
Գիշեր է. և խավարում
Ծովն է ծփում ալեկոծ...

Կարմրավառ մի դրոշ՝
Վիշկաների վերևում,
Ցրում է այն մութը գորշ
Ու հաղթական ծածանվում...

Եվ չկային փոքրիկներ,
Հանդես էր, բայց ոչ ազատ,
Ո՞վ գիտե, ի՞նչ պատահեր
Այն մայիսին ծաղկազարդ:

Բայց խաղաղ է շուրջը դեռ,
Ճառ է ասում մի բանվոր.
— Ողջունում եմ, ընկերնե՛ր,
Մայիսմեկյան տոնը նոր...

Ողջունում եմ և գիտեմ...
Սակայն հանկարծ՝ կրակոց.



Ու հառաչեց կարծես թե
Կասպից ծովը ալեկոծ...

Կանգնեց բանվոր Քաջ Բաբան.
— Առա՜ջ,— ասաց,— ընկերնե՛ր...
Եվ դիրքերի վրա նա
Ալ դրոշը պարզեց վեր:

Բաբայի հետ կանգնեցին
Ընկերները նրա մոտ՝
Ե՛վ հորատող Վասիլին,
Ե՛վ Խալիլը, և՛ Համոն...

Արյունոտ էր մայիսն այն.
Եվ մարտական հանդեսին,
Քանի՜-քանիսը ընկան,
Քանիսը բանտ նետվեցին:

Բայց ի՞նչ են բանտ և աքսոր
Բանվորական ուժի դեմ.
Բանվորները միշտ հզոր,
Կռվել գիտեն և հաղթել...

2

Հոկտեմբերյան դրոշով
Բացվեց ճամփան մայիսի.
Տեսե՜ք, որքա՜ն ոսկեշող
Մանկիկներ կան հանդեսին:

Ահա բանվոր նավթագործ
Այն ծեր Բաբան թոռան հետ,
Դուրս է եկել լայն փողոց,
Տոն է այսօր ու շքերթ:

Շարասյունով առաջին
Իջնում է բաց հրապարակ
Բանվորական աշխարհի
Հզորազոր մի բանակ:

Ի՜նչ պայծառ է մայիսը,
Բաքուն՝ հսկա մի քաղաք,
Բաց է արել հանդեսը
Արևի տակ մեր խաղաղ:

Թոռը՝ պապի ուսերին,
Թաթիկները պարզած վեր,
Շուրջը ծովն է մարդկային,
Շուրջը անթիվ դրոշներ...



# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ դրուժինաներում և ջոկատներում

## ԲՆՈՒԹՅԱՆ ԳՐԿՈՒՄ

Անցյալ տարի մեր ջոկատը ուղևորվեց Հայկական Մթին լեռների ամենաբարձր Աղ-ձալա գագաթը, որը ծովի մակերևույթից 3203 մետր բարձր է։ Մեզ հետ էր նաև բնագիտության դասատու ընկեր Գաբրիելյանը։

Գարնանային տաք օր էր, երբ մենք ճանապարհ ընկանք։ Կեսօրին արդեն լեռան ստորոտում էինք։ Այստեղ մենք պետք է հաղթահարեինք լեռան գագաթը տանող զառիթափը։ Երբ դժվարությունն արդեն հաղթահարված էր, մենք սկսեցինք մեր ուսումնասիրությունները։ Պիոներ Մուրադը մամուռների ու քարաքոսերի նմուշներ էր հավաքում, իսկ Ռաֆիկը բնագիտական կաբինետի համար սունկերի տեսակներ հավաքեց։ Միաժամանակ մենք ուսումնասիրում էինք շրջապատի բնությունը, իսկ բնագիտության դասատու ընկեր Գաբրիելյանը բացատրում էր լեռնագագաթի բնության և կենդանական աշխարհի առանձնահատկությունները։

Այդ ճանապարհորդությունը մեզ օգնեց ավելի խորը ըմբռնելու դպրոցում ձեռք բերած գիտելիքները։

Մենք պատրաստվում ենք անցյալ տարվա օրինակով այս տարի ևս ճանապարհորդություններ կազմակերպել։ Քննությունները հաջող հանձնելուց հետո մենք կգնանք մեր շրջանի Արփա լճի մոտ կառուցած ջրամբարը ուսումնասիրելու։ Ամռանը մենք կլինենք նաև մեր շրջանի այլ վայրերում և կուսումնասիրենք հայրենի երկրի բնությունն ու հարստությունները։

*ԼԻՆԵԻՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

*(Լենինականի օկրուգի, Ղուկասյանի շրջանի Թազագյուղի դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ, 3-րդ ջոկատի ջոկատավար)։*

## ՄԵՐ ԴՐՈՒԺԻՆԱՅՈՒՄ

*Մեր դրուժինայի պիոներները ոչ մի ջանք չխնայեցին, որպեսզի քննությունները դիմավորեն կազմ ու պատրաստ։ Բացի անցած դասերը կրկնելուց, մենք վերջին քառորդում կազմակերպեցինք առարկայական հավաքույթներ, էքսկուրսիաներ, խաղեր ու վիկտորինաներ, որոնք օգնեցին մեզ ավելի լավ ըմբռնելու անցածը, ավելի խորացնելու և լայնացնելու դասի ժամանակ ձեռք բերած գիտելիքները։ Մենք եղանք Լենինականի ապակու և աղյուսի գործարաններում, շուտով կլինենք նաև Տեքստիլ կոմբինատում։*

*Ջոկատային և օղակային հավաքույթներում մենք հաճախակի քննության ենք առնում գեղարվեստական և գիտական գրքեր։ Արդեն քննել ենք Նեննա Կոշևայայի «Պատմվածք որդու մասին» գիրքը, «Հետքեր քարի վրա» և այլ գրքեր։*

*Քննությունների նախապատրաստման շրջանում մեզ շատ օգնեցին մեր ուսուցիչները։ Կրկնությունների ժամանակ նրանք սիրով էին պատասխանում մեր հարցերին, օգնում էին մեզ ավելի լավ ըմբռնելու առարկան։*

*ՀՈՎՀԱՆՆԵՍ ԳԱՍՊԱՐՅԱՆ*

*(Լենինականի օկրուգի, Ախուրյանի շրջանի, Ախուրիկ գյուղի միջնակարգ դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ)։*

## ՍԵՓԱԿԱՆ ՁԵՌՔԵՐՈՎ

*Ալավերդու Սպանդարյանի անվան միջնակարգ դպրոցի պիոներները ուրախ զրուցելով վերադառնում էին էքսկուրսիայից։ Նրանք եղել էին Ալավերդու պղնձաձուլական կոմբինատի կոնվերտորի բաժանմունքում և զարմանքով էին դիտել այն հսկա հնոցները, որոնց մեջ պղինձ էին ձուլում։*

*— Տղանե՛ր, եկեք պատրաստենք Պղնձաձուլական կոմբինատի կոնվերտորի գործող մակետը,— ասաց Ռազմիկ Թամազյանը։*

*— Բայց անհրաժեշտ գործիքներ ու նյութեր չունենք,— ավելացրեց Հովիկ Մուրադյանը։*

*— Կբերենք մեր ունեցածը, իսկ պակասն էլ ֆիզիկայի կաբինետից կվերցնենք։*

*Ֆիզիկայի ուսուցիչ Էվոյանը մեծ սիրով լսեց տղաներին և օգնեց նրանց։*

*Մյուս օրը ֆիզիկայի կաբինետ էին հավաքվել Ռազմիկ Թամազյանը, Հովիկ Մուրադյանը, Ռուբեն Քեֆիլյանը և Պասկալ Աբգարյանը։ Նրանք աշխատանքի պլան կազմեցին և գործի անցան։*

*Մի քանի օր հետո մակետը պատրաստ էր։ Նրա մեջ կային տարբեր չափի վառարաններ, էլեկտրական դինամո, հանքաքար վերցնող շերեփներ ու վերամբարձ կռունկ։*

*— Ռազմի՛կ, ապա աշխատեցրու,— խնդրեց պիոներներից մեկը։*

*Երբ Ռազմիկը միացրեց էլեկտրական հոսանքը կոնվերտորի բոլոր մեխանիզմները և մեքենաներն սկսեցին աշխատել։ Լսվեց մի թեթև աղմուկ ու հանկարծ ներքևից դեպի վերև բարձրացան հանքաքա-*



Մի խումբ պիոներներ իրենց պատրաստած գործարանի մակետի նետ:

Ֆոտո Ռ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ

րով բեռնված երեք փոքրիկ վագոնիկ։ Վագոնիկները կանգ առան կոնվերտորի մուտքի մոտ։ Նրանց մոտեցավ վերամբարձ կռունկը, որը հատուկ ամանների մեջ լցված հանքաքարը բարձրացնում ու տանում էր դեպի հնոցները։ Երեխաներն անթարթ աչքերով հետևում էին փոքրիկ մեխանիզմների աշխատանքին և ուրախ-ուրախ ասում.

—Ա՛յ քեզ իսկական գործարա՜ն...

Պատանի ֆիզիկոսների աշխատանքը գրանով չվերջացավ։

Ամիսներ են անցել։ Դպրոցի ֆիզիկայի կաբինետը շատ է հարստացել։ Պղնձի կոմբինատի կոնվերտորի մակետի կողքին, սեղանների վրա շարված են տեսակ-տեսակ մոդելներ, ինքնաշեն գործիքներ ու մեխանիզմներ։

Շուտով դպրոցը ցուցահանդես կազմակերպեց։ Բարձր դասարանների աշակերտները դիտելով էքսպոնատները, հիշեցին ֆիզիկայից անցած թեմաները։

— Ահա, տեսե՛ք, սա էլեկտրական սղոց է,— հավաքվածներին բացատրում է ֆիզիկայի դասատուն,— երբ 7-րդ դասարանում մենք անցանք էլեկտրականությունը և նրա ուժով գործող մեքենաները, ձեր ընկերները՝ Գառնիկ Իսրայելյանը, Յուրիկ Զարգարյանը, Ջեյլուսկին Մեհրաբյանը և Էդիկ Աբգարյանը որոշեցին էլեկտրական հոսանքի շղթայի օրենքի հիման վրա պատրաստել այս սղոցարանը, էլեկտրամագնիսական կռունկը և էլեկտրական զանգը։ Ապա, Էդի՛կ, աշխատեցրու սղոցը։

Էդիկը էլեկտրական կոճակը սեղմեց։ Փոքրիկ մոտորը սկսեց աշխատել։ Փոկով միացված սղոցանիվը պտտվեց և աշխատեցրեց սղոցը։ Ընկեր Էվոյանը մի կտոր փայտ մոտեցրեց սղոցին և մի քանի վայրկյանում փայտը երկու մասի բաժանեց։

— Այսքան փոքր սղոց և այսպիսի աշխատա՞նք,— զարմանքով բացագանչում էին երեխաները։

— Երեխանե՛ր, հիշո՞ւմ եք, մենք խոսել ենք նաև էքսկավատորի մասին։ Ահա նրա մոդելը,— հաջորդ սեղանին մոտենալով բացատրում է ֆիզիկայի դասատուն։— Սա պատրաստել է Յուրիկ Զարգարյանը։ Էքսկավատորի շերեփը իջնում և բարձրանում է, թեքվում է աջ ու ձախ։ Սա էքսկավատորի պարզ մոդելն է. իսկ կոմունիզմի մեծ կառուցումներում օգտագործում են ավելի բարդ տեսակները։

Այնուհետև երեխաները դիտեցին պատանի ֆիզիկոսների պատրաստած շարժական ու անշարժ ճախարակները, գրավեզանդի գործիքը՝ զուգահեռ ուժերի գումարման կանոնը բացատրելու համար, սեգներյան անիվը՝ Նյուտոնի երրորդ օրենքը ապացուցելու համար, ապա «Ալավերդու էլեկտրիֆիկացիայի քարտեզը», «Ձորագէս—Ալավերդի էլեկտրական հոսանքի տրանսֆորմացիան» վերնագիրը կրող գծագիրը և այլ շատ գծագրեր, մոդելներ ու ինքնաշեն գործիքներ։

Կաբինետում հավաքվածները երկար ժամանակ հիանում էին 7-րդ դասարանի աշակերտներ՝ Ալյոշա Եսայանի և Թոմիկ Սարգսյանի պատրաստած էլեկտրագնացքի մոդելով, որը բաղկացած էր էլեկտրաքարշից և մի վագոնից։ Այդ փոքրիկ գնացքը կանգնած էր հատակին ամրացված գծերի վրա։ Երբ Կառլեն Երիցյանը էլեկտրական հոսանքը միացրեց, գնացքը առաջ շարժվեց։

— Երեխանե՛ր, այս բոլորն իհարկե լավ է,— ասում է դպրոցի դիրեկտոր ընկեր Գևորգյանը.— բայց այս ամենը միայն նրա համար չէ, որ դուք նայեք ու հիանաք։ Սրանք ամենից առաջ օգնում են ֆիզիկան ավելի լավ յուրացնելուն։ Լավ ուսումնասիրեցեք ֆիզիկայի ինքնաշեն և գործարաններում պատրաստված գործիքներն ու մոդելները, ավելի ուշադիր և խորը կրկնեցեք անցածը, որ տարեվերջի քննությունները հաջող հանձնեք։ Մեր ֆիզիկայի կաբինետը ձեզ շատ կօգնի, որ դուք ֆիզիկայից բարձր գնահատականներ ստանաք։



Ֆիզիկայի խմբակի անդամները իրենց պատրաստած էլեկտրաքարշի մոդելի մոտ:

Ֆոտո Ռ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ

Գ. ԲԱԴԱԼՅԱՆ

# ՄԵՐ ԾԱՌԸ

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ
(Ստալինյան մրցանակի լաուրեատ)

Մենք մեր բակում տնկել ենք մի
Փոքրիկ, սիրուն խնձորենի,

Եվ այս տարի նա մեծացել,
Մեր բոյին է արդեն դարձել:

Մենք մեր ծառը շատ ենք սիրում,
Խնամում ենք, առատ ջրում:

Հիշեցնում ենք մեկս մեկի,—
— Գոհա՛ր, տերև էլ մի պոկիր:

— Վարդա՛ն, մոտից զգույշ անցիր,
Կամաց խաղա փազփզոցի:

— Հրա՛չ, բերիր հեծանիվը,
Ո՛ր չկոտրես ճանկարծ շիվը:

Բայց...
էլ ինչ բայց,
Մի օր ճանկարծ
Տեսնենք ճյուղը ճեղքվել է,
Ճեղքվել է ու կախվել է...

— Գոհա՛ր, ո՞վ է կոտրել ծառը:
— Ես չե՛մ,— լալիս է Գոհարը:

— Ասա, դո՞ւ ես կոտրել, Վարդա՛ն:
— Ես չեմ, ազնի՛վ պիոներական:
— Իսկ դո՞ւ, Հրա՛չ:
— Ես էլ չեմ... բայց...
Հեծանիվը դիպավ ճանկարծ...

— Ա՛յ, դու Հրա՛չ, քեզ չասացի՞նք
Ծառի մոտով զգույշ անցիր:

Շատ տխրեցինք, բայց ի՞նչ արած,
Պետք էր մի ճար գտնել արագ:

Մտածեցինք, մտածեցինք,
Ճյուղը կապել որոշեցինք:
Տուն վազեցինք,
Շոր ճարեցինք,
Շոր ճարեցինք ու բերեցինք,
Կախված ճյուղը մենք ուղղեցինք,
Կոտրած տեղը պինդ կապեցինք:

Օրեր անցան.
Ահա նորից
Պինդ կպել է ճյուղը ծառի:
Իսկ Հրաչը՝ դեպքը հիշում
Հեծանիվն էլ մոտ չի քշում...

Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ






*ԱԼԲԵՐՏ ՄԱՅԼՑ*

*Նկ. ԱՆ. ՉՈՐԴԱՔՅԱՆԻ*

Ժամանակակից ամերիկյան հայտնի գրող Ալբերտ Մայլցը գրական ասպարեզ է իջել 1930 թվականին։ Նա կրել է սովետական գրականության և հատկապես ռուս մեծ գրող Մաքսիմ Գորկու բարերար ազդեցությունը։

Մայլցն իր ստեղծագործություններում պատկերում է ամերիկյան աշխատավորության ծանր կյանքն ու պայքարը։ Նա անողոք կերպով դատապարտում է երկրի ֆաշիստականացող կառավարողներին և ամերիկյան գիշատիչ կապիտալիզմը։ Մայլցի դրական հերոսները կոմունիստներն են։ Նրանք պայքարում են բանվոր դասակարգի և ամբողջ աշխատավորության ազատության և երջանիկ ապագայի համար։

Մարտիկ գրողը շատ անգամ է ենթարկվել ֆեդերալ բյուրոյի՝ ամերիկյան գեստապոյի հալածանքներին։ 1947 թվականին «հակաամերիկյան գործունեությունը հետազոտող» ֆաշիստական հանձնաժողովը մյուս առաջադեմ գործիչների հետ միասին նրան հեռացնում է աշխատանքից, իսկ 1950 թվականին ամերիկյան կոնգրեսին անպատվելու պատրվակով նա մի տարվա բանտարկության է դատապարտվում։

Ազատվելով բանտից, Մայլցն ավելի ուժեղ կերպով է շարունակում պայքարը պատերազմի հրձիգների դեմ և խաղաղության արդարացի գործի հաղթանակի համար։

Տպագրում ենք Մայլցի «Խաղը» պատմվածքը։

*— Պետք է ցատկեմ սալլի վրա…*

*— Մի բան մոռացար։*

*— Ի՞նչ։ Ոչինչ էլ չեմ մոռացել։*

*— Ո՛չ, մոռացար,— ասաց մարդը։— Քեզ ի՞նչ է պատահել։*

*Տղան հոնքերը կիտեց։ Նա մոտ տաս տարեկան պատանի էր։ Նրա վտիտ, փոքր ու արտահայտիչ դեմքը ցրտից թեթևակի կապտել էր։ Նա թարթեց աչքերը, որպեսզի քունը հեռացնի։*

*— Շարունակիր։*

*— Չեմ կարողանում հիշել։*

*— Հիմա՛ր, ուզո՞ւմ ես բռնվել։*

*— Չեմ բռնվի։ Հենց դա էր պակաս։ Նման խաղեր խաղացել եմ. սա էլ կխաղամ։*

*— Ախր ինչպե՞ս, երբ նույնիսկ չես կարողանում պատմել այն, թե ինչ պիտի անես։*

*— Լավ, կտեսնես։*

*— Չեմ տեսնի, այժմ պետք է գնանք տուն. ահա մեր անելիքը։*

*— Հերն էլ անիծա՞ծ…*

*— Ինչո՞ւ ես հայհոյում։ Հայհոյելով ոչինչ դուրս չի գա։ Հազար անգամ ասել եմ, որ չեմ ուզում քո հայհոյանքը լսել։ Կմեծանաս, կդառնաս խուլիգան։ Հիշիր իմ խոսքը։*

*Նրանք լռեցին։ Մարդը հառաչեց։ «Հիմա պետք է վեր կենայի,— մտածեց նա,— նախաճաշեի և ճաշի կաթսաները ձեռքիս քայլեի դեպի տրամվայի կանգառը»։*

*Նա իր հաստ, սև բեղերի վրայից մաքրեց ձյունը։ «Ա՛յ դու չարաճճի,— մտածեց նա,— հիմա դու պետք է անկողնում լինեիր. քեզ համար դեռ շատ վաղ է»։*

*— Լավ,— ասաց նա տղային,— դեռ չը՞ հիշեցի՞ր։*

*Տղան գլուխը բացասաբար թափահարեց։ Նա խոժոռեց դեմքը և կախեց շրթունքը։*

*— Ի՞նչ, ուզում ես լա՞ց լինել։*

*— Ո՛չ,— ասաց տղան։— Ի՞նչ է, դու ինձ երեխա՞ ես կարծում։*

*— Երեխայի պես ես շարժվում։ Ինչ որ ասում եմ չես կարողանում հիշել։*

*— Է՞…*

*Տղան դուրս եկավ դռնից և մի բուռ ձյուն վերցրեց։*

*— Իսկ դա ինչի՞ համար է։*

*— Մի քիչ ձյուն եմ վերցնում։*

— Կույր չեմ, տեսնում եմ։ Ինչի՞ համար ես վերցնում։

— Ձնագնդի եմ ուզում պատրաստել։

— Էլ ուրիշ բան չկա՞ր անելու։ Չէ՞ որ ասում էիր, թե ուզում ես քրոջդ օգնել։

— Լավ, մի՞թե չեմ օգնում։

— Ո՛չ, չես օգնում։ Քո ուղեղը ամեն ինչի մասին մտածում է, իսկ գործի մասին՝ ոչ։ Դե՛, եկ այստեղ։

Նա կոպիտ կերպով բռնեց տղայի թևից և քաշեց դեպի շենքի մուտքը։

— Դու մոռացար ամենակարևորը՝ տոպրակը։ Ինչպե՞ս կարող եմ քեզ վստահել, երբ մոռանում ես տոպրակը։

— Չեմ մոռացել, հայրի՛կ,— ասաց տղան,— չէ՞ որ տոպրակը գրպանումս է։ Չէի կարծում, որ դրա մասին պետք է խոսել։

— Դու պետք է ամեն ինչ պատմես։ Ես պետք է համոզվեմ, որ ամեն ինչ գիտես։ Տոպրակը պատրաստիր։

Տղան գրպանից մի ճմռթված թղթե տոպրակ հանեց և փչելով բաց արեց։

— Հետո ի՞նչ պիտի անես։

— Հետո կսպասեմ, որ կաթնավաճառն անցնի տան եռևը։

— Ո՞ր տան։

— Այ հենց այն տան։

— Կանա՞չ։

— Ոչ, հաջորդի։

— Իսկ ինչո՞ւ կանաչը չես ընտրում։

— Դե՜... այդ բոլորը գիտեմ, հայրի՛կ,— ասաց տղան։— Հո բոլորը նորից չե՞մ կրկնելու։

— Եթե չպատմես, ուղիղ տուն կգնանք։

— Կանաչ տունը կողքից դուռ ունի, իսկ այդտեղից նա շրջվում է հետևյալ տունը գնալու համար։ Լավ է, ես կարող եմ, հայրի՛կ, ինչո՞ւ ես վախենում։

— Գիտեմ, որ կարող ես,— պատասխանեց հայրը,— բայց պիտի ավելի վստահ լինենք։ Ձեռքերդ սառե՞լ են։

— Այո։

— Տոպրակը թևիդ տակ պահիր։

Նա վերցրեց տղայի փոքրիկ, սպիտակ ձեռքերը իր հաստ ու ջղուտ ձեռքերի մեջ և սկսեց դանդաղորեն շփել։

— Հետո ի՞նչ պիտի անես։

— Հենց որ նա շրջվի տան եռևի անկյունը, դուրս կվազեմ և մի շիշ կթռցնեմ։ Հետո կպահեմ տոպրակում և կքայլեմ դեպի դիմացի մայթը։

— Վազելո՞ւ ես։

— Ոչ, միայն կքայլեմ։

— Եվ եթե նա տեսնի քեզ ու վազի քո եռևից, դու կվազես չէ՞։

— Ոչ, կշարունակեմ քայլել։ Թույլ կտամ, որ ինձ բռնեն և ապա կսկսեմ լաց լինել։

— Վստա՞հ ես, որ լաց կլինես։

— Իհարկե, փորձել եմ, այնպես, որ Ջեննիին էլ եմ հավատացրել։— Տղան ծիծաղեց։— Չհացնում էի, թե երբ ինձ ծեծում են։

— Սը՜ս։ Ձայնդ մի՛ բարձրացրու։

— Ձեռքերս արդեն տաքացան, հայրի՛կ։

— Դիր գրպանդ. ես տոպրակը կպահեմ։ Իսկ եթե բռնվես, ի՞նչ կլինի։

— Կշարունակեմ լաց լինել և դու կմոտենաս ու կասես, թե երբ ես մի խեղճ տղա եմ...



— Սը՜ս...

Հայրը ձեռքով փակեց տղայի բերանը.

— Ինչ-որ մարդ է գալիս։ Ձևացրու, որ իբր աչքդ բան է ընկել։

Տղան մի աչքը կկոցեց և մյուսը լայն բացեց։ Հայրը թեքվեց դեպի նա։

Մի ինչ-որ անտուն մարդ, որ կաղալով քայլում էր առատ թափվող ձյան միջով, անցավ նրանց մոտով։ Նրա գլուխը փաթաթված էր կտավե կոշտ տոպրակով։

«Մենք ավելի լավ օրում ենք, քան այս մարդը» մտածեց հայրը։

Նրանք հայացքով հետևեցին ցնցոտիների մեջ փաթաթված մարդուն, մինչև որ ձյան վարագույրը ծածկեց նրան։

— Ձյունը գնալով ուժեղանում է,— շրշընջաց տղան։— Այդ կաթնավաճառը փողոցի դիմացի մայթից ինձ չի տեսնի։ Ես կարող եմ մի շշից ավելի վերցնել։

— Մեկը բավական է։ Լավ, ի՞նչ կլինի, երբ նրան ասեմ, թե քեզ ճանաչում եմ։

— Դու կավելացնես, որ հիվանդ մայր ունեմ, որ կաթը վերցնում եմ նրա համար։ Եթե նա ինձ բաց թողնի, դու կխոստանաս հետևել ինձ, որպեսզի այլևս նման բան չանեմ... Վերջացավ, չէ՞, հայրի՛կ։

— Վերջացավ։—Նա հառաչեց և ձեռքով սղալեց բեղերը։ Քաղցա՞ծ ես։

— Մի քիչ։

Հայրը սեղմեց տղայի թևը.

— Ոչի՞նչ, ես էլ եմ քաղցած։ Քեզ մնում է թքել ու խփել փորիդ։ Նա թքեց ձյան վրա և թեթևակի հարվածեց փորին։ Դու էլ արա։

Տղան հետևեց հորը։ Երկուսն էլ ծիծաղեցին։

— Դա նշանակում է, որ վերջացրիր ուտելը և ստամոքսդ բավարարված է,— ասաց հայրը։

— Իհարկե, չէ՞ որ հենց հիմա երկու ձու և մի քիչ էլ կաթնով կերա։

Նրանք նորից ծիծաղեցին։

— Ոչի՞նչ, կգնանք տուն և մի բան կուտենք։

Հայրը հանկարծ զգաստացավ։ Նրա խոշոր մարմինը կծկվեց։

— Ահա և կաթի սայլը։ Վերցրու տոպրակը։ Դուրս չգաս, մինչև չասեմ։

— Դուրս չեմ գա,— տղայի դեմքը շառագունեց հուզումից։— Սպասիր, կտեսնես։ Ամեն ինչ ճիշտ ու ճիշտ կկատարեմ։ Ես խնձորներ էլ եմ թռցրել։

— Գիտե՞ս, եթե որևէ անախորժ բան պատահի, ես կգոչեմ։ Եթե գոչեմ «փախիր», ապա փախիր, գործ չունես, թե ինչ կանեմ՝ լսո՞ւմ ես։

— Շատ լավ։

— Խոստանո՞ւմ ես։

— Խոստանում եմ։

— Հիշիր հա՜, դու գործ չունես, թե ինձ ինչ կպատահի։

— Շատ լավ։

Կաթի սայլը դանդաղորեն առաջանում էր փողոցով։ Հայր ու տղա կծկվեցին մուտքի առջև։

— Երբ որ հասնի ջրմուղի ծորակին... մի՛ հուզվիր։ Ոչինչ, բալի՛կ, ոչինչ։ Դե՛, սկսիր։

Տղան դուրս եկավ։ Նա փափուկ ձյան միջով դանդաղորեն գնաց դեպի սայլը։

«Պիտի ասեի, որ գլխարկը աչքերին քաշեր։ Աչքերը ձյուն կլցվի» մտածեց հայրը։ Նա բերանը լայն բաց արած խորը շնչում էր, կուրծքը ծանր բարձրանում, ինչում էր և ամեն շնչելիս տարօրինակ ցավ էր զգում։

Կաթնավաճառը անհայտացավ տան ետևում։ Նա ցատկեց սայլի առջևի մասի վրա և ձեռքը ներս մեկնեց։

«Ի՞նչ երկար է տևում,— մտածեց հայրը։ Տե՛ր աստված, ի՞նչ երկար է տևում»։

Տղան ցատկեց փափուկ ձյան վրա։ Կաթի շիշը խոթեց տոպրակի մեջ և սկսեց արագորեն քայլել։ Այդ ժամանակ կաթնավաճառը երևաց նրբանցքում։ Հայրը հայացքը սևեռեց նրա վրա։ Կաթնավաճառը շրջվելով դիմեց դեպի հաջորդ տունը։ Այսպես, ամեն ինչ ավարտված էր, ամեն ինչ կարգին էր։ Նա արդեն ապահով էր։ Հայրը ձեռքով սղալեց բեղերը, թուքը կուլ տվեց և հետո խորը հոգոց հանեց։ Նա շարժվեց տղայի ետևից։

Տղան հաջորդ շենքի մոտ սպասում էր նրան։ Նրա փոքրիկ դեմքը փայլում էր։

— Լավ էր չէ՞,— հարցրեց նա հորը։

— Իհարկե, տղա՛ս, կեցցե՛ս,— ասաց հայրը թեթևակի խփելով տղայի գլխին։

— Տուր ես տանեմ։

— Ես էլ կարող եմ,— պատասխանեց տղան։

— Դե, լավ։

— Բայց գիտե՞ս, հայրի՛կ, շատ հեշտ էր։ Ես կարող էի հեշտությամբ մի ուրիշն էլ վերցնել։—Նա հետևում էր հորը՝ թռչկոտե-

լով և սղղալով փափուկ ձյան վրա։— Հայրիկ, կարելի՞ է վաղը երկու շիշ վերցնել։ Կարելի՞ է։

Հայրը չպատասխանեց։

— Լսիր, հայրի՛կ,— ասաց տղան՝ քաշելով նրա վերարկուից։

— Ի՞նչ։

— Կարելի՞ է։

— Ի՞նչ։

— Դե ասացի քեզ։

— Չլսեցի։

— Կարելի՞ է վաղը երկու շիշ վերցնել։ Գիտես, դա նույնքան հեշտ է, ինչքան մեկը վերցնելը։ Ես կարող եմ թոցնել։

— Ո՛չ։

— Բայց ես կարող էի երկուսը վերցնել։

— Ո՛չ։

Նրանք լուռ քայլեցին։

— Այ մի տղաներին պատմեի՛...

Հայրը կանգ առավ։



— Եթե որևէ մեկին ասես, գլուխդ կըջարդեմ։

— Չեմ պատմի։ Ես հենց այնպես...

— Սա գողություն է,— ասաց հայրը։ —Գողություն է։

— Իհարկե, գիտեմ։ Լավ, գնանք, հայրի՛կ, մրսում եմ։

Նրանք շարունակեցին իրենց ճամփան։

— Ոտքերդ թրջվե՞լ են։

— Մի քիչ։

— Երբ որ գործի անցնեմ, քեզ համար կրկնակոշիկ կամ ռետինե սապոգներ կըգնեմ։ Սիրտդ կուզի՝ մինչև ծնկներդ ձյան միջով քայլիր. ո՛չ ոտքերդ կթրջվեն, ոչ էլ կմրսես։

— Գուցե նպաստ ստանալիս ինձ կըրկնակոշիկ էլ տան,— ասաց տղան։

— Թերևս. ես արդեն խնդրել եմ։ Նորից կխնդրեմ։

— Ոտքերս թրջվելուց չեմ վախենում։

Հայրը նո՛րից կանգ առավ։

— Դու գիտես, որ գողությունը վատ բան է, չէ՞։

— Իհարկե, հայրի՛կ։

— Դու գիտե՞ս, որ մենք գողանում ենք միայն քո հիվանդ քրոջ համար։

— Իհարկե։

— Ես երբեք իմ կյանքում գողություն չեմ արել,— ասաց հայրը։— Իմ ամբողջ կյանքում ազնվորեն եմ աշխատել։ Ես լավ բանվոր եմ։ Միշտ հոգացել եմ ընտանիքիս կարիքները։ Կարող ես մայրիկիդ հարցնել։

— Դե լավ է, հայրի՛կ,— ասաց տղան,— ինչո՞ւ ես մտածում, ես հո գող չեմ դառնալու։ Գիտեմ, գողությունը վատ բան է։

— Բայց ասացիր խնձորներ ես թոցրել։

— Իսկ դու գիտե՞ս, հայրի՛կ, մարդու սիրտը երբեմն համեղ բաներ է ուզում։

— Այո։

— Բայց ես գողություն չեմ անելու։ Ազնիվ խոսք, հայրի՛կ, կմեծանամ, քեզ պես ուժեղ մարդ կդառնամ և աշխատանք կգտնեմ։

Հայրը նայեց տղային։ «Ինչպես չէ,— մտածեց նա.— ես քո տարիքին մի գլխով քեզանից բարձր էի։ Իսկ քեզ, փոքրիկ չարաճճի, նրանք թույլ չեն տալիս, որ մեծանաս»։

— Հայրի՛կ, ես մրսում եմ,— ասաց տղան։

Նրանք թարմ ու սպիտակ ձյան վրայով գնում էին տուն։

Անգլերենից թարգմ. Բ. ՉՈՒԽԱՋԻՋՅԱՆ

# ՍՊԻՏԱԿ ԵՂԲԱՅՐ ԻՄ

*ԼԵՆԳՍՏՈՆ ՀՅՈՒԶ*
*(Նեգր բանաստեղծ)*

*Նկ. Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ*

Ես չգիտեի, որ մենք եղբայր ենք,
Սպիտակ եղբա՛յր իմ.
Չգիտեի ճիշտ,
Մենք միասին ենք, այդ ես կիմանամ,
Կիմանամ ընդմիշտ:

Միասնությունը մեծ ուժ է ու զենք,
Նրանով տանենք մենք մեր պայքարը,
Նրանով կռվենք, նրանով հաղթենք,
Եվ կհաղթենք մենք, սպիտակ եղբայր իմ:

Դու ճանաչեցիր և՛ ծանր ճնշում,
Ե՛վ ստրկություն,
Իմ աշխատանքը կիսելով ինձ հետ.
Մերը կլինեն այգի ու անտառ,
Գործարան ու տուն,
Աշխատողինը կլինեն հավետ.
Մերը կլինեն հողեր ու հանքեր,
Մերը կլինեն նավեր ու բանկեր,
Մերը կլինեն, սպիտակ իմ ընկեր,
Աշխատողինը կլինեն հավետ:

Ես նեգր եմ,
Ահա քեզ իմ ձեռքը,
Սպիտակ իմ ընկեր,
Խաղաղությունը ծնունդ է առել
Այս ձեռքերով մեր,
Կարմիր դրոշը, որ բարձրացրիր դու
Երեկ պայքարում,
Կարմիր դրոշը շողում է այսօր
Իմ սև ձեռքերում:
Գնանք պայքարի միևնույն շարքում
Լավ կյանքի համար,
Խաղաղության մեր,
Սպիտակ իմ ընկեր:

*Թարգմ. Մ. ՄԱՐԳԱՐՅԱՆ*



# ԱՄԱՌԱՅԻՆ ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՕՐԵՐԻՆ

Վ. ԲԱՐԱԽԱՆՅԱՆ

Ֆոտո Վ. ՍԽՎՈՅԱՆԻ

Օրվա դասերը պատրաստելուց հետո, մեր բակի երեխաները սովորաբար հավաքվում են ստվերախիտ թթենու տակ, մի քիչ հանգստանալու, խաղալու և զվարճանալու:

Սակայն տարեվերջի քննությունների պատճառով, նրանք ավելի քիչ և կարճ ժամանակով են հանդիպում, միմյանց հաղորդում օրվա նորությունները, ապա սկսում են ծրագրել, թե ինչպես են անցկացնելու իրենց ամառային հանգիստը:

Վերջին հարցը նրանց շատ է հուզում: Սկիզբ են առնում վիճաբանությունները. բոլորը առաջարկներ են անում: Վեճերը հաճախ վերջանում են աղմուկով: Եվ դրա համար էլ օրերս նրանք խնդրեցին ավագ ջոկատավար Հենրիկ Բալասանյանին օգնելու իրենց:

— Ուսման ամբողջ տարին լարված պարապելուց և հաջող ավարտելուց հետո, մեր երջանիկ երեխաները լավ հանգստանալու և կազդուրվելու իրավունք են ստանում, որպեսզի աշնանը թարմ ուժերով գնան դպրոց, շարունակեն ուսումը:

Շուտով կգա պիոներական ուրախ ամառը: Հազարավոր երեխաներ կմեկնեն ճամբարներն ու սանատորիաները. կսկսվեն արշավներն ու էքսկուրսիաները և մեր հայրենի երկրի չքնաղ լեռներում ու ծաղկավետ հովիտներում բարձր կհնչի նրանց ուրախ երգն ու անկաշկանդ ծիծաղը: Սակայն շատ երեխաներ, նույնիսկ ճամբար մեկնողներն իրենց արձակուրդի մեծ մասը կանցկացնեն քաղաքում: Ուրեմն պետք է մտածել ամառն ավելի խելացի և արդյունավետ հանգստանալու մասին: Այժմ ասացեք, թե ի՞նչ եք ծրագրում դուք,— ավարտելով զրույցը պիոներներին դիմեց ավագ ջոկատավարը:

Նորից սկսվեց վեճը, բայց այս անգամ արդեն ավելի կազմակերպված: Լևոնն սկսեց գրի առնել հավանություն գտած առաջարկները: Ռուբիկը, որն անցյալ տարի եղել էր Ղրիմի «Արտեկ» պիոներական ճամբարում, պահանջեց, որ ռեժիմով ամեն օր զրույցներ անցկացվեն մեծ առաջնորդներ Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի մասին, նրանց մարտական զինակիցների, Սովետական Միության հերոսների, պատանի լենինյանների, կոմերիտմիության, գիտության, տեխնիկայի և այլ հարցերի շուրջը:

Ընթերցասեր Տոլիկը պահանջեց ընթերցանության ժամ սահմանել և կարդալ հետաքրքիր գրքեր, թերթերից ու ամսագրերից հոդվածներ ու պատմվածքներ:

— Իսկ ռադիոյով մանկական հաղորդումներ կլսենք: Ես դրսում բարձրախոս կպատրաստեմ,— ավելացրեց պատանի տեխնիկ Սաշիկը:

— Ֆիզկուլտուրան մեզ համար շատ անհրաժեշտ է,— ձայն խնդրելով ասաց Լուսիկը:— Ես բոլորից կսովորեցնեմ վոլեյբոլ խաղալ: Ամեն օր առավոտյան կանցկացնենք լիցքային վարժություններ, կկազմակերպենք վազքի, թռիչքի, քայլի մրցումներ, շախմատի տուրնիր և կպարզենք, թե ովքեր են մեր չեմպիոնները: Միայն պետք է պատրաստել ֆիզկուլտ հրապարակ: Կարելի է հարևան բակերի ճամբարներին հրավիրել վոլեյբոլի մրցման: Մենք անպայման կհաղթենք:

— Իսկ ես կուզենայի անպայման էքսկուրսիա գնանք մի քանի գործարաններ, տպարան: Մի օր կարելի է անցկացնել մանկական երկաթգծում, մի օր Պիոներների պալատում: Կինո ու թատրոն էլ կգնանք բոլորս միասին, ամբողջ ճամբարով:



*Երևանի Թումանյանի փողոց № 18 տան բակային ճամբարի պիոներները Կիրովի անվան մանկական պարկում։*

Սևակի այս առաջարկներն էլ ծափահարությամբ ընդունվեցին:

Մանիկը խնդիր դրեց մի քանի անգամ խարույկ ունենալ և խոստացավ ելույթի հրավիրել իրենց մանդոլինիստների խմբակը: Ապա նրանք որոշեցին կազմակերպել ռադիո-խմբակ և սովորել ռադիոգործը:

— Երգեր կսովորենք և շատ հետաքրքիր խաղեր կխաղանք...

Հաջորդ օրը պիոներներն իրենց ծրագրով ներկայացան շենքի լիազոր ընկեր Օֆիկին, որը շատ ուրախացավ և խոսք տվեց օգնել ճամբարի կազմակերպմանը:

Անցյալ տարվա փորձով բոլոր խոշոր բակերում կարելի է կազմակերպել ճամբարներ, որին կօգնեն կոմերիտական կազմակերպությունները, ուսուցիչները և ծնողները:

Շուտով, շատ շուտով կսկսվի պիոներական ամառը, որը կանցնի շատ ուրախ ու բովանդակալից:

# ԱԼԱ ԿԼԻՇԵՎԻՋԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Գ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

Ֆոտո Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

Հերթական մարզումը ավարտված էր։ Լենինականի Կիրովի անվան դպրոցի ֆիզկուլտուրայի դասատու ընկեր Ս. Սարգսյանը հանգիստ քայլերով մոտենում է իր սանին՝ նույն դպրոցի 6-րդ դասարանի աշակերտուհի Ալա Կլիշևիչին։

— Նորից պետք է փորձես։ Առանձնապես շատ ժամանակ է կորչում ստարտից պոկվելիս։

— Իսկ 200 մետր վազքի ժամանակ չէ՞ որ վերջում եմ հոգնում։ 100 մետր վազքից հետո իմ ցուցանիշները խիստ կերպով ընկնում են,— մտահոգված դեմքով սպորտային կոստյումը հագնելով ասում է Ալան։



— Նորից պետք է փորձել,— աղջկան կարծես լսելով ասում է դասատուն։— Դու կարծում ես Նադյա Խնիկինան, Սեչենովան կամ Գոկիելին միանգամի՞ց են այդպիսի վարպետության հասել։

Մարզումները շարունակվում էին։ Կլիշևիչը 200 մետր վազքի վերջին մի քանի տասնյակ մետրերն անցնելիս, շատ էր հոգնում։

— Անհրաժեշտ է ֆիզիկապես ավելի կոփվել, պետք է պարապես նաև մարմնամարզությամբ։

Եվ Ալան սկսեց հաճախել դպրոցի մարմնամարզական սեկցիայի պարապմունքներին։

— Սպորտից հետո ավելի թեթևացած ու թարմացած ես զգում քեզ, իսկ այդ ժամանակ դասեր պատրաստելու ամենից լավ ժամանակն է,— ընկերուհիների հարցական դեմքերին նայելով, ժպտալով պատասխանում էր Ալան։

Վերջապես Երևանի «Դինամոյի» ստադիոնի վազքուղիներում շարված հարյուրավոր պիոներների ու դպրոցականների մեջ կանգնած էր նաև Ալա Կլիշևիչը։

Այդ օրը Կլիշևիչը կարողանում է ամենակարճ ժամկետում անցնել 100 մետր տարածությունը և գրավում է առաջին տեղը։ Նա նվաճում է ռեսպուբլիկայի վազքի չեմպիոնի պատվավոր կոչումը։ Դա 1950 թվականի ամռանն էր։ Առաջին հաղթանակը նոր եռանդ է բերում պատանի սպորտսմենուհուն։ Եվ Կլիշևիչը Հայաստանի թեթև ատլետների հավաքական թիմի կազմում անցյալ տարվա ամռանը մեկնում է Թբիլիսի՝ մասնակցելու անդրկովկասյան եղբայրական ռեսպուբլիկաների սպորտսմենների տրադիցիոն մրցումներին։

Ինչպիսի հուզմունք էր ապրում այդ տասնչորսամյա աղջիկը, մտնելով Թբիլիսիի Բերիայի անվան ստադիոնը։ Տրիբունաները լեփ-լեցուն էին մարդկանցով։ Վազքուղիներում փորձեր էին կատարում Միության շատ ճանաչված ու նշանավոր սպորտսմեններ։

— Սկսում ենք 200 մետր վազքի մրցումները,— հայտարարում են բարձրախոսները։

Ալայի աչքի առջևից անցնում են մրցակիցները։ Հանդիսականները բուռն ծափերով են դիմավորում հաղթողներին։ Հանկարծ Ալան լսում է.

— Սպորտի վաստակավոր վարպետ Գոկիելի (Վրաստան), Ալա Կլիշևիչ (Հայաստան)...

Փոքրահասակ աղջկա հետ ստարտին է մոտենում Գոկիելին։ Լսվում է «մա՛րշ»։ Ալան պոկվում է տեղից։ Սկզբում նա իր առջև տեսնում է մրցակցի՝ Գոկիելու ոտքերը։ Աղջիկն սկսում է արագացնել վազքի տեմպը։ Ահա նա արդեն Գոկիելուց քիչ է ետ մնում։ Հեռվում սպիտակին է տալիս ֆինիշի ժապավենը։

Ալան մոռանում է ամեն ինչ։ Նրա աչքերի առջև երևում է միայն իր մրցակիցը։ Ահա նա հասնում է նրան։ Մնում է ընդամենը 10 մետր տարածություն։ Ալան վերջին ճիգն է գործադրում։ Նրանից առաջ այլևս ոչ ոք չկա։ Ահա և ժապավենը...

Ստադիոնը թնդում է բացագանչություններից ու ծափերից։ Նորից լսվում է բարձրախոսի ձայնը.

— Հայաստանի ներկայացուցիչ Ալա Կլիշևիչը հաղթանակ տարավ 200 մետր վազքում։ Առաջ անցնելով սպորտի վաստակավոր վարպետ Գոկիելուց, նա նվաճեց Անդրկովկասի չեմպիոնի կոչումը։

Բոլորը շրջապատում են շնորհալի սպորտսմենին և շնորհավորում սպորտային մեծ հաղթանակի առթիվ։

Մրցումներից հետո Ալան վերադարձավ Լենինական։

Այժմ նա համառորեն պարապում է սպորտային սեկցիաներում։ Լենինականի Կիրովի անվան դպրոցում շատ սեկցիաներ կան։ Կիրովի դպրոցի պիոներներն ու դպրոցականները սպորտի համարյա բոլոր ձևերից միշտ էլ նվաճում են քաղաքի առաջնությունը։ Ռեսպուբլիկայի չեմպիոններից շատերն այդ դպրոցից են։ 542 աշակերտ հանձնել են ԽՊԱՊ-ի ու ՊԱՊ-ի կրծքանշանի նորմաները։

# Բյուրեղների ԱՇԽԱՐՀՈՒՄ



Թ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

*(Գեոլոգիական գիտությունների թեկնածու)*

Մի անգամ բժիշկները հիվանդին վիրահատելիս նրա ստամոքսում ընկույզի մեծության մի բյուրեղ գտան: Բժիշկներին շատ էր հետաքրքրում, թե արդյոք բյուրեղը հիվանդի ստամոքսում էր առաջացել, թե՞ հիվանդն անզգուշաբար կուլ էր տվել:

Ուսումնասիրությունները ցույց տվին, որ բյուրեղը հիվանդի ստամոքսում առաջացել է նրա խմած դեղերից: Տարբեր մեծության բյուրեղներ են պատահում կենդանիների ու մարդկանց երիկամներում, փայծաղում և միզափամփուշտում:

Բույսերի բջիջներում հաճախ արդեն պատրաստի մանր բյուրեղներ են լինում: Բյուրեղներ են գտել ամենահասարակ օրգանիզմի՝ ամեոբայի մեջ: Մի քանի կենդանի օրգանիզմներ իսկական բյուրեղային «գործարաններ» են հանդիսանում: Օրինակ՝ կորալները կալցիումի բյուրեղներից ամբողջ կղզիներ են կառուցում:

Թանկարժեք մարգարիտները, որ պատրաստում են ծովաբնակ «մարգարտագործ» փափկամորթ կենդանիները, նույնպես բաղկացած են մանր բյուրեղներից:

Փափկամորթի փեղկերի մեջ ընկնում է մի ավազահատիկ ու խանգարում նրա հանգիստը: Կենդանին ավազահատիկի շուրջը սադափանյութ է արտադրում և հատիկը դրանով պատում: Ժամանակի ընթացքում ավազահատիկը սադափի շերտերով պատվելով վեր է ածվում մարգարիտի:

Հաճախ չինացիները ծովից փափկամորթներ որսալով նրանց խեցիների մեջ արձանիկներ են դնում: Ապա փափկամորթները ծովն են նետում: Երբ տարիներ հետո նրանք որսում են այդ կենդանիներին, նրանց մոտ գտնում են արձանիկները, որոնք պատած են սադափով և շատ թանկ են գնահատվում:

Ճապոնացիները ծովափերում հատուկ հարմարություններ են ստեղծել, ուր ծովի ալիքներից պաշտպանված և մետաղալարից պատրաստված ցանցերում մարգարտագործ փափկամորթները մարգարիտներ են «պատրաստում»: Այդ ցանցերում փափկամորթների խեցիների արանքը լցնում են սադափի փշրանք ու նորից ծովը նետում: Յոթ կամ տաս տարուց հետո մարդիկ նրանց հանելով խոշոր ու թանկարժեք մարգարիտներ են գտնում:

Զանազան ջրափոսերում ու ճահիճներում փտող բույսերից ու կենդանիներից ջուրը հարստանում է ծծմբաջրային գազով: Այդ ջրերում ապրող բակտերիաները բարդ քիմիական ռեակցիաների միջոցով ծծումբը միացնելով մետաղների հետ, ստեղծում են զանազան բյուրեղների կուտակումներ ու հաճախ էլ այդ բյուրեղներով պատվում են փտող բույսը կամ կենդանին:

Մի քանի հարյուր տարի առաջ Շվեդիայում մի հանքափոր բանվոր ընկավ հանքահորի ջրհորներից մեկի մեջ ու կորավ: Վաթսուն տարի հետո, երբ բանվորները հանքը մշակելով հասան ջրհորի հատակին, գտան կորած բանվորի դիակը: Զարմանալի բան. դիակը պատած էր պղնձի կոլչեդանի փայլուն բյուրեղներով: Ստացվել էր բյուրեղներով պատած մի ոսկեզօծ արձան:

Այդպիսի մի ուրիշ դեպք էլ է հայտնի: Երկարատև հիվանդությունից հետո, մի գիտնական բանալով իր լաբորատորիայի պահարաններից մեկը, այնտեղ երկաթի կուպարոսի լուծույթով լցված բաժակում գտավ մի բյուրեղացած մուկ: Այստեղ էլ տեղի էին ունեցել նույն քիմիական պրոցեսները, ինչ որ հանքում մարդու հետ: Ջուրը հարստացել էր քայքայվող օրգանիզմի արտադրած ծծմբի միացություններով, որոնք ռեակցիայի մեջ մտնելով տվել էին կոլչեդանի դեղին բյուրեղներ և ծածկել մկան մարմինը:

Ամերիկայի Արիզոնա նահանգում կան քարացած ու բյուրեղացած անտառներ: Դրանք առաջացել են հարյուր հիսուն միլիոն տարի առաջ և ժամանակի ընթացքում քարացել են:

Նկ. Ա. Ն. ՉՈՐԴԱՋՅԱՆԻ






Մ. ԿՅՈՒՐԵՂՅԱՆ
(Ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների թեկնածու)

Նկ. Գ. ԱՐԱՄՅԱՆԻ

Հայտնի է, որ ռադիոալիքները մտնելով ռադիո-ընդունիչի մեջ, առաջացնում են ձայն: Բայց այժմ ռադիո-ընդունիչի վրա մենք կարող ենք տեսնել խոսողի կամ երգողի դեմքը: Մոսկվայում, Լենինգրադում և այլ վայրերում հենց այդպիսի ռադիո-ընդունիչներ են աշխատում, որոնց միջոցով և՛ լսում ենք, և՛ տեսնում:

Ինչպե՞ս են պատկերները հաղորդվում հեռավորության վրա: Այս հարցին պատասխանելու համար անհրաժեշտ է իմանալ, թե ինչ է ֆոտոէլեկտրական էֆեկտը:

1890 թվականին Մոսկվայի համալսարանի պրոֆեսոր Ստոլետովը նկատեց, որ երբ մետաղների վրա լույս է ընկնում՝ էլեկտրականանում են, իսկ լույսն անջատելուց հետո նրանք կորցնում են իրենց էլեկտրականությունը: Բայց մետաղները միևնույն լույսի տակ տարբեր չափով են էլեկտրականանում:

Ֆոտոէլեկտրական էֆեկտ ստանալու համար կա մի ապարատ, որը կոչվում է ֆոտոէլեկտրական էլեմենտ, պարզապես ֆոտոէլեմենտ: Ֆոտոէլեմենտը մի ապակյա գունդ է (տես գծագիրը), որից օդը հանված է: Նրա ներսի պատին քսում են նատրիում մետաղ: Նատրիումի շերտը հաղորդալարով միացած է հոսանք ցույց տվող մի գործիքի՝ ամպերմետրի հետ: Ապակյա գնդի մեջ ամրացնում են նաև մի մետաղյա գնդիկ, որի ծայրը ամրացված է էլեկտրական մարտկոցի դրական բևեռի հետ. այդ պատճառով գնդիկը ունի դրական էլեկտրականություն: Մարտկոցի բացասական բևեռը միացնում են ամպերմետրի հետ:

Լույսի ճառագայթների նեղ փունջը ընկնելով ֆոտոէլեկտրական էլեմենտի պատուհանի վրա, թափանցում է ներս, ընկնում է նատրիումի վրա և այնտեղից պոկում չափազանց փոքրիկ մասնիկներ, որոնք ունեն բացասական լիցք և կոչվում են էլեկտրոններ: Այս էլեկտրոնները դուրս գալով մետաղից, ձգվում են դեպի փոքրիկ գնդիկը: Առաջանում է էլեկտրական հոսանք և շեղվում է ամպերմետրի սլաքը: Որքան ուժեղ է լույսը, նույնքան ուժեղ է հոսանքը:

Այժմ տեսնենք, թե ինչպես է հաղորդվում պատկերը:

Ֆոտոէլեմենտի պատուհանի առջև, արագ պտտվող ապակյա գլանի վրա փաքարված է մարդու դեմքի նեգատիվ պատկերը: Պատկերը լուսավորվում է ուժեղ լույսի ճառագայթների չափազանց նեղ փնջով: Լույսը պատկերի զանազան մասերով թափանցում է ֆոտոէլեմենտի մեջ, այնտեղ պոկում է նատրիում մետաղից էլեկտրոնները և շղթայում առաջացնում է հոսանք: Առաջացած հոսանքը շատ թույլ է, դրա համար էլ սարքավորումների միջոցով ուժեղացնում են:

Պատկերացնենք, որ մարդու դեմքի պատկերի մակերեսը հավասար է 100 քառակուսի սանտիմետրի: Ճառագայթների նեղ փունջը շարժվելով ձախից աջ կամ աջից ձախ և վերևից ներքև, անցնում է բոլոր քառակուսիներով: Երբ անցնում է ճակատի մասով,




ֆոտոէլեմենտի մեջ լույսի ուժը համեմատականորեն մեծանում է, քան շրթունքներից թափանցելիս: Ուրեմն առաջին դեպքում պոկվող էլեկտրոնների քանակն ավելի մեծ է, քան երկրորդ դեպքում պոկվող

էլեկտրոնները: Այսպիսով մենք շղթայում ստանում ենք փոփոխական ուժի էլեկտրական հոսանք:

Լույսի այս փունջն անցնում է պատկերի բոլոր քառակուսիներով մեկ տասնութերորդական վայրկյանում:

Այս փոփոխական հոսանքը գալիս է ընդունող կայան և այնտեղ հատուկ սարքավորումների շնորհիվ լույսի ուժը ներարկում է տատանման՝ թուլանում և ուժեղանում է:

Ընդունող կայանում կա նույնպիսի մի գլան, բայց մետաղյա, որը պտտվում է ճիշտ այնպիսի արագությամբ, ինչպես հաղորդող կայանում՝ ապակյա գլանը:

Մետաղյա գլանի վրա փաթաթված է մաքուր լուսանկարչական թուղթ, որը լուսավորվում է փոփոխվող լույսի աղբյուրից, այսինքն 100 քառակուսիներից թափանցած լույսի ուժի չափերով: Պարզ է, որ այդ թղթի վրա կստացվի այն պատկերը, որը փաթաթված է հաղորդող կայանում ապակյա գլանի վրա: Այս անգամ արդեն ստանում են պոզիտիվ պատկերը: Քանի որ բոլոր 100 քառակուսիները ստացվում են չափազանց կարճ ժամանակամիջոցում և մեր աչքը դեմքի պատկերի տարբեր մասերը տեսնում է միանգամից:

Այժմ տեխնիկան այնքան է զարգացել, որ հաղորդող կայանում խոսող կամ երգող մարդու պատկերը անընդհատ լուսանկարվում է և անընդհատ ուղարկվում ընդունող կայանը: Դուք նստած ձեր ռադիո-ընդունիչի մոտ տեսնում եք այդ մարդու դեմքի բոլոր շարժումները, կարող եք տեսնել ֆուտբոլի խաղը, պարողների խումբը:

Բժշկական ինստիտուտի ուսանողների համար տելեվիզորի միջոցով կարելի է փորձված բժիշկների կողմից կատարվող ամենաբարդ օպերացիաները ցուցադրել, իսկ աշակերտներին ցույց տալ հետաքրքրական փորձեր ֆիզիկայից, քիմիայից և բնագիտությունից:

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

*Կազմեց Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*

## Աշխարհում առաջինը

1802 թվականին մի նշանավոր ռուս գիտնական աշխարհում առաջինը հայտնագործեց էլեկտրական աղեղը: Նրանից ութ տարի հետո միայն, նույնը հայտնի դարձավ անգլիացի Դևիին:

էլեկտրական աղեղը էլեկտրական լույսի առաջին աղբյուրն է: Նա կիրառվել է Չիկոլևի աղեղային լամպի և «Ռուսական արև» համարվող հռչակավոր «Յաբլոչկովի մոմի» մեջ: Ներկայումս աղեղն օգտագործվում է կինոնկարահանումների համար լուսարձակումների, կինոպրոյեկցիոն ապարատների, լուսարձակների և փարոսների մեջ:

Երբ գտնեք նկարում պատկերված այս խնդրի պատասխանը, դուք կիմանաք, թե որ նշանավոր ռուս գիտնականն է էլեկտրական աղեղը հայտնագործել:




## Հնարամիտ վարպետը

Վարպետի մոտ մնացել էր տարբեր ձևի 8 կտոր տախտակ: Մտածելով, թե ինչպես օգտագործել, վարպետը տախտակի կտորներն իրար կցեց ու ստացավ նկարում պատկերված այս ձևը:




«Ոչինչ չի ստացվում» մտածեց նա և ուզեց թողնել իր մտադրությունը. բայց հետո տախտակի կտորները մի այլ ձևով միացրեց: Ստացվեց մի կլոր սեղանի երես:

Դուք էլ մտածեցեք, թե ինչպե՞ս դասավորել ու սոսնձել տախտակի կտորները, որ ստացվի կլոր սեղանի երես:

## Զրո

Տրված է 329-ը: Այս թվերի միջև այնպիսի մաթեմատիկական նշաններ գրեք և այդ թվերն առանց հերթականությունը խախտելու այնպես դասավորեցեք, որ պատասխանը ստանաք զրո:

## Խնդիր

Վեց միանման թվանշաններով գրել 100.

### Կատակ-խնդիր

Երկու տղա կանգնած են դաշտում։ Նրանցից մեկը նայում է դեպի հյուսիս, մյուսը՝ դեպի հարավ։ Ինչպե՞ս կարող են նրանք նաև միմյանց նայել, առանց գլուխները շրջելու։

### Չայնվորդ

«Սովետական Միության գետերը»



1. Գետ Հայաստանում։ 2. Գետ, որ հոսում է Լենինգրադի միջով։ 3. Գետ, որ հոսում է ՍՍՌՄ-ի հարավային սահմանագծով։ 4 և 5. Արալյան ծովը թափվող գետեր։ 6. Գետ մեր երկրի Արևելքում։ 7. Լենա գետի վտակը։ 8. Ենիսեյի վտակը։ 9. Գետ, որը հոսում է ՍՍՌՄ-ի հեռավոր արևելյան սահմանով։ 10. Գետ Անդրկովկասում։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը նկ. Գ. ԱՂԱՍՅԱՆԻ*
*Չորրորդ էջը նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*




Журнал „Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԲԱՏԻԿՅԱՆ ՀՐ., ԻՍԱԲԵԿՅԱՆ Է., ՀԱԿՈԲՅԱՆ Գ., ՄՈՎՍԻՍՅԱՆ Ա., ՍԵՎՈՒՆՑ Գ. *(խմբագիր)*, ՍԻՄԱԿ, ՍԻՄՈՆՅԱՆ Ե., ՏԱԼՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ս.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 04415, Պատվեր 267. Տիրաժ 5000 Տպագրական 2 1/4 մամուլ. Ստորագրված է տպագրության 14/V—52 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1952 թ.*

     

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

ԱՄԲՈՂՋ ՍՐՏՈՎ ՈՂՋՈՒՆՈՒՄ ԵՄ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ ՈՒ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻՆ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԵՐԵՍՆԱՄՅԱԿԻ ՕՐԸ:

ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻՆ ՑԱՆԿԱՆՈՒՄ ԵՄ ԱՌՈՂՋՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՈՒՍՄԱՆ ՄԵՋ, ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ, ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՄ:

ԹՈՂ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԱՅՍՈՒՀԵՏԵՎ ԵՎՍ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻՆ ԴԱՍՏԻԱՐԱԿԻ ՈՐՊԵՍ ՀԱՎԱՏԱՐԻՄ ԼԵՆԻՆՅԱՆՆԵՐ, ՄԵՐ ՄԵԾ ՀԱՅՐԵՆԻՔԻՆ ՆՎԻՐՎԱԾ ԶԱՎԱԿՆԵՐ:

**Ի. ՍՏԱԼԻՆ**

*Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ*

*(ՀԼԿԵՄ Երևանի Քաղկոմի դպրոցական գծով քարտուղար)*

1952 թվականի մայիսի 19-ին լրացավ Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության 30 տարին:

Պիոներական կազմակերպության ստեղծման գաղափարը կապված է Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի անունների հետ:

1920 թվականին, կոմերիտմիության երրորդ համագումարում Վ. Ի. Լենինը կոմերիտմիությունից պահանջում էր. «Հարկավոր է, որ կոմունիստական երիտասարդական միությունը բոլորին պատանեկական տարիներից, տասներկու տարեկանից, դաստիարակի գիտակցական և կարգապահ աշխատանքում»:

Կոմերիտմիությունը պարտիայի հանձնարարությամբ 1922 թվականին ձեռնամուխ եղավ պիոներական կազմակերպության ստեղծմանը: Մոսկվայի Կրասնոպրեսնենսկայա ռայոնի 16-րդ տպարանի կոմերիտականներն անցկացրին Սովետական Ռուսաստանի առաջին պիոներական ջոկատի առաջին հավաքը. ջոկատի շարքերն ընդունվեցին ընդամենը 52 երեխա: Շուտով պիոներական ջոկատներ ստեղծվեցին Սովետական Միության շատ քաղաքներում ու գյուղերում: 1924 թվականին պիոներական ջոկատներում արդեն կար 150.000 պիոներ:

Պիոներական կազմակերպության ամբողջ կյանքն ու աշխատանքը անցել է կոմունիստական պարտիայի ամենօրյա հոգատարության և ուշադրության ներքո: Պիոներները պարտիայի հոգատարության և ջերմ սիրո զգացմունքները դեպի առաջնորդները արտահայտում էին Վ. Ի. Լենինին և Ի. Վ. Ստալինին ուղղված իրենց նամակներում:

Վ. Ի. Լենինի մահը մեծ վիշտ պատճառեց նաև պատանի պիոներներին: Նրանք էլ պատվո պահակ կանգնեցին Իլյիչի դագաղի մոտ: Կոմերիտմիությունը պարտիային խոսք տվեց անեցնել լենինյանների արժանավոր սերունդ և որոշեց պիոներական կազմակերպությանը շնորհել Վլադիմիր Իլյիչ Լենինի անունը: Պատանի լենինյանի կոչումն ընդունելու և պարտիային հավատարմության երդում տալու համար 1924 թվականի մայիս ամսին 10.000 պիոներ հավաքվեցին Կարմիր հրապարակում: Կոմերիտմիությունը նրանց դիմեց հետևյալ խոսքերով. «Դուք պետք է արժանի լինեք այն մեծ անվանը, որ գրված է ձեր դրոշի վրա»:

Պատանի պիոներներն իրենց կազմակերպության ստեղծման առաջին իսկ օրերից սկսեցին օգնել մեծերին: Նրանք կուլտուրական աշխատանք էին կատարում ձեռնարկություններում,ստանձնել էին գյուղական դպրոցների շեֆությունը: Պիոներները լավ էին սովորում և օրինակ էին ցույց տալիս մնացած դպրոցականներին: 1929 թվականի օգոստոսին, Մոսկվայում, պիոներների համամիութենական առաջին հավաքին, որին մասնակցում էր 7000 դելեգատ և 50 հազար հյուր, ընկեր Լ. Մ. Կագանովիչը ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի անունից ողջունելով պիոներներին, ասաց. «Թանկագին պատանի



*Տուվայի ավտոնոմ մարզի քոչվորական յուրտերի տեղերում բարձրացել են կոլխոզային ավաններ: Նկարում՝ Ժդանովի անվան կոլխոզի դպրոցի պիոներներ՝ Դոլգարամաա Նասկիլ-Օոլը և Ամազ Խուլեր-Օոլը գնում են դպրոց:*



Ադրբեջանական ռեսպուբլիկաների դելեգատները, որոնք պատմում էին իրենց աշխատանքների մասին. «Այսօր մեր ուրախությունը անսահման է, որովհետև միասին ենք անցկացնում բարեկամությանը



*Լիտվական ՍՍՌ Շաուլյայի միջնակարգ դպրոցում ստեղծված է ռադիո-հանգույց. Նկարում՝ պիոներները իրենց օրվա նորություններն են հաղորդում:*

նվիրված հավաքը: Թող այս հավաքը է՛լ ավելի ամրապնդի Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի պիոներների բարեկամությունը»:

Երևանի պիոներները լավ նախապատրաստվեցին պիոներական կազմակերպության երեսնամյակին: Նրանք ջոկատների, դրուժինաների ռայոնական և քաղաքային հավաքույթներ և հավաքներ կազմակերպեցին, որոնք նվիրված էին պիոներական կազմակերպության պատմությանը, հերոս պիոներներին, «Կատարում ենք Իլյիչի պատգամները» և այլ թեմաներին:

Պիոներները իրենց կազմակերպության գոյության 30 տարին դիմավորեցին քննությունների նախապատրաստման եռուն շրջանում:

Քննությունների ընթացքում նրանք հաշիվ են տալիս ուսումնական տարվա ընթացքում ձեռք բերած գիտելիքների համար:

Ընկեր Ստալինը կոմունիզմի ապագա կառուցողներին դիմում է հետևյալ խոսքերով. «Կառուցելու համար պետք է գիտենալ, պետք է տիրապետել գիտությանը, իսկ գիտենալու համար պետք է սովորել, սովորել համառորեն, համբերատար կերպով»:

Պիոներները պատվով կկատարեն Լենինի և Ստալինի պատգամները:



*Աշխաբադի ռայոնի անվան կոլխոզի պատանի միչուրինականներ՝ Բիբի Տուգիրովան և Կոզել Խոջալիևան գիտում են իրենց պատվաստած ծառը:*

(Ֆոտոխրոնիկա ՏԱՍՍ)



*Պիոներները Երևանի Խնկո Ապոր անվան մանկական գրադարանում.*   Ֆոտո Վ. ՍԵՎՈՅԱՆԻ




## Բոլշևիկյան մամուլի օրը

Քառասուն տարի առաջ, 1912 թվականի մայիսի 5-ին Պետերբուրգում (այժմ Լենինգրադ) լույս տեսավ բոլշևիկյան «Պրավդա» թերթի առաջին համարը: «Պրավդան» հիմնադրվեց Վ. Ի. Լենինի ցուցումով և Ի. Վ. Ստալինի անմիջական ղեկավարությամբ: Այնքան մեծ դեր կատարեց «Պրավդան» Ռուսաստանի աշխատավորության ռևոլյուցիոն դաստիարակման գործում, որ նրա հիմնադրման օրը՝ մայիսի 5-ը տոնվում է որպես Բոլշևիկյան մամուլի օր: Լենինը և Ստալինը միշտ նշել են այն մեծագույն դերը, որ կատարում է բոլշևիկյան մամուլը:



Սովետական իշխանության շնորհիվ մամուլը չտեսնված չափերով զարգացավ: 1951 թվականին Սովետական Միության մեջ լույս էր տեսնում 7800 լրագիր և ավելի քան 1400 ամսագիր: Մեր հայրենիքում չկա մի շրջան, որը չունենա իր թերթը:

Սովետական Միության մամուլի և հատկապես «Պրավդա» թերթի օրինակով ժողովրդական դեմոկրատիայի երկրների, ինչպես նաև կապիտալիստական երկրների կոմպարտիաների մամուլն ամեն օր մասսաներին դաստիարակում է ժողովուրդների եղբայրության ու խաղաղության ոգով:

Հակառակ դրան հետադեմ բուրժուական մամուլը արյունոտ պատերազմի և ավերածության պրոպագանդա է մղում: Բայց նա անզոր է խաղաղության շարժման դեմ. խաղաղասեր մարդիկ վաղուց արդեն առաջնորդվում են դեմոկրատական մամուլի գաղափարներով և գործի են վերածում դրանք:

## Գ. Սեդով

Լրացավ Արկտիկայի նշանավոր հետազոտող Գեորգի Սեդովի ծննդյան 75 տարին: Դեռ փոքր հասակից Սեդովը ցուցաբերեց զարմանալի ընթերցասիրություն և հաստատակամություն: Ամառը ծանր աշխատանքով փող վաստակելով, ձմեռը սովորելով, Սեդովն ավարտեց ծովագնացության դպրոցը: Շուտով նա սկսեց Սիբիրի ծովերի ու գետերի հետազոտությունը: Նա մեծ գործեր կատարելու ձգտումներ ուներ: Սեդովը վաղուց մտադիր էր կազմակերպել առաջին ռուսական էքսպեդիցիան դեպի Հյուսիսային բևեռ, բայց ցարական կառավարությունը նրան միջոցներ չտրամադրեց: Սեդովը մի կերպ միջոցներ գտնելով 1912 թվականի օգոստոսին ուղևորվեց դեպի Հյուսիսային բևեռ:



Սեդովի էքսպեդիցիան ստիպված ձմեռեց Նոր Երկրի ափին: Սեդովն ուսումնասիրեց կղզին, կազմեց Նոր Երկրի ափերի ճշգրիտ քարտեզը: Մեծ դժվարություններով էքսպեդիցիան հասավ Ֆրանց Իոսիֆի Երկիրը:

Տեսնելով, որ նավով անհնարին է հասնել տեղ, Սեդովը երկու նավաստիների հետ 1914 թվականի գարնանը ոտքով ճանապարհվեց դեպի բևեռ: Այդ ժամանակ նա արդեն ծանր հիվանդ էր ցինգայով: Սեդովը մահամերձ էր, բայց չէր հրաժարվում իր նպատակից: Ռուդոլֆի կղզում Սեդովը մահացավ (1914 թվականի մարտին):

Միայն Սովետական իշխանության օրոք կատարվեց Սեդովի իղձը. սովետական հերոս օդաչուները և գիտնականները 1937 թվականին Հյուսիսային բևեռում բարձրացրին Սովետական երկրի դրոշը:

## Հ. Բարբյուս

1873 թվականի մայիսի 17-ին ծնվեց ֆրանսիական նշանավոր գրող Հանրի Բարբյուսը: Իր առաջին վեպերի մեջ («Լուսավորություն», «Դժոխք») Բարբյուսը կյանքը պատկերում էր որպես մի դժոխք, որտեղից ոչ մի ելք չկա: Սակայն մասնակցելով առաջին համաշխարհային պատերազմին, գրողը հասկացավ, որ պատերազմի և միլիոնավոր հասարակ մարդկանց տանջանքների ու կոտորածի պատճառը կապիտալիստների անհագ շահամոլությունն է: 1916 թվականին Բարբյուսը լույս ընծայեց իր հռչակավոր «Կրակ» վեպը, որի մեջ հայտարարեց, որ միայն աշխատավորները կարող են վերջ տալ պատերազմի սարսափներին:



Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան Բարբյուսին վերջնականապես կանգնեցրեց ժողովրդի և սոցիալիզմի կողմը: 1923 թվականին Բարբյուսը ընդունվեց ֆրանսիական կոմպարտիայի շարքերը: 1920—30 թվականների ընթացքում լույս ընծայած իր վեպերի մեջ («Դահիճներ» և այլն), Բարբյուսը շարունակում է անխնա մերկացնել իմպերիալիստական ստրկացումը, շահագործումն ու տեռորը:

1929—30 թվականներին ճանապարհորդելով մեր մեծ հայրենիքում նա վառ գույներով պատկերեց սովետական երկրի մեծագույն նվաճումները:

Բարբյուսի վերջին երկը «Ստալին» գիրքն է, որ նա գրեց 1935 թվականին: Այդ գրքում նա գրել է «Ստալինը—Լենինն է այսօր» թևավոր խոսքը:

Հ. Բարբյուսը մեռավ 1935 թվականին:

# ԱՄՌԱՆ ՕՐԵՐԻՆ












Այստեղ պատկերված է բակային ճամբարի կյանքի մի քանի էպիզոդ: Դուք էլ աշխատեցեք հետաքրքիր կազմակերպել և անցկացնել ձեր բակային ճամբարի առօրյան: